# ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ԱԶԳԱՅԻՆ

# ԱՌԱԿՆԵՐ

ԵՂԲԱՐՑ ԳՐԻՄՄԵՑ ԱՇԽԱՏՈՒԹԵԱՄԲ ՀԱՒԱՔՈՒԱԾ

---

*Թարգմանութիւն ֆրանսիականէն*

*Եսայի Տէր Գրիգորեանց։*

---

ՏԵՏՐԱԿ Ա.

---



Ս. ՊԵՏԵՐԲՈՒՐԳ

1864

024

ՑԱՆԿ.





ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ԱԶԳԱՅԻՆ

# ԱՌԱԿՆԵՐ

ԵՂԲԱՐՑ ԳՐԻՄՄԱՑ ԱՇԽԱՏՈՒԹԵԱՄԲ ՀԱՒԱՔՈՒԱԾ

—

Թարգմանութիւն Ֆրանսիականէն

Եսայի Տէր Գրիգորեանց։

ՏԵՏՐԱԿ Ա.




Ս. ՊԵՏԵՐԲՈՒՐԳ

1864

### ՅԱՌԱՋԱԲԱՆՈՒԹԻՒՆ.

Այս գրքոյկը, որի գլխագրից պարզ երեւում է, նշանակած է երխայոց համար, և չէ շարադրութիւն մի առանձին հեղինակի, այլ գործ ամբողջ ազգի՝ երկու ուսումնական եղբարց ձեռքով հաւաքուած, կոկած և տղայոց ճաշակին յարմարեցուած: Որքան այդ աշխատութիւնը կարող է օգտակար լինել երեխայոց կրթութեան՝ կըտեսնենք վերջը: Առաջ կըկամենայինք պատասխան տալ այն հարցին, որ անշուշտ կ՚առաջարկեն մեզ մեր ընթերցասէրք և մանկավարժք, այսինքն՝ „ինչո՞ւ համար ընտրեցինք թարգմանելու այդ երևակայական առակները, պարիկներով, կախարդներով և գազաններով զարդարուած գիրքը. ինչո՞ւ մոռացանք, որ պարիկները, կախարդները և առ հասարակ երևակայական ստեղծուածները վնասակար ու ոխերիմ թշնամիք են գիտութեան, առել է՝ և կրթութեան“:

Այս տեսակ հարցեր քանիսից լսեցինք· շատերից խորհուրդ անգամ ստացանք չի թարգմանելու այդ, մեր կարծիքով, պատուական գիրքը։ Ի հարկէ, ամենայն մարդ իրաւունք ունի ասելու այն, ինչ որ մտածում և կարծում է, որպէս և լսողը ազատ է ընդունելու նոցա ասածը, եթէ իւր կարծիքի և համոզման ընդդէմ չէ. և կամ մերժելու, եթէ ընդդէմ է, հաւանական չէ։ Այսպէս, մենք ևս ունենալով և վայելելով այդ ազատութիւնը և հաւատի լինելով մեր ընտրած գրքի գեղեցկութեան ու օգտակարութեան վերայ՝ կըհամարձակուինք ասել մեզ հարցանողներին, որ կախարդները և պարիկները գործիք են մեր ձեռքում տղայոց ուշ ու միտքը գրաւելու համար. ինչու որ, միայն այդպիսի պարզ, դիւրըմբռնելի, նոցա տարիքի և հասկացողութեան պատշաճ միջոցներով, կարելի է շարժել նոցա հարցասիրութիւնը և հեշտութեամբ հաղորդել այս և այն ճշմարտութիւնը կախարդների բերանով։ Մի՞թէ չի պատահել ձեզ տեսնել ի՛նչպէս երեխայք կախարդի անուն լսածին պէս՝ կըցատկեն կըկանգնեն, աչքերը մեծ կըբանան ևականջները սրելով՝ կըպատրաստուին անա-

սէլի համբերութեամբ լսել պառաւի երկար ու ձիգ, շատ անգամ անիմաստ հէքեաթը: Այդ միջոցին քանի՜ համբոյր, քանի՜ գգուանք և քաղցր ժպիտ՝ բաղդաւորութիւն է ունենում այդ խեղճացած և չորացած պառաւը նորանից ստանալու: Ո՞րքան աղաչանք և պաղատանք է լսում նորա կողմից, որ յանձնառու լինի կրկնել այդ անձոռնի, անսկիզբն և անվախճան հէքեաթը: Չէ՛ մէ՛ որդիքս, ասելով և տեսնելով ընդհանուրի ուրախութիւնը, դարձեալ բարեհաճում է երկրորդել իւր հէքեաթը, բայց թուլութեան ու յոգնութեան պատճառով ի՛նչ ասածը խեղճը ինքը չըգիտէ. այս տեղից այն տեղից քաշքշելով, փետփտելով մի բան ասում է, աշխատում է չըվիրաւորել նորա, որ միւսանգամ-էլ գան խնդրել պատմել, տախտակ ձեռքը և թոռմած թուշերը համբուրեն, և կարճ ասել՝ ուշ դարձնեն այդ կիսակենդան կընամարդու վերայ:

Ներողամիտ տղայքը չեն բողոքում, նոքա բաւական են նրանով ևս, որ լսեցին սատանայի, թագաւորի և կախարդի անունը, մնացածը մի ակնթարթում կըլրացնեն իւրեանց վառվռուն երևակայութեամբ: Ահա

տեսանում էք որպիսի դիւթական ներգործութիւն ունի երեխայոց վերայ պառաւի անձոռնի և խանգարուած տռակը. բայց եթէ այդ տռակների մէջ պարունակուած և ծածկուած լինէր բարոյականութիւն, ճշմարտութիւն, մարդասիրութիւն, բարեգործութիւն, պարզամտութիւն, սէր միաբանութեան, և այլն. այն ժամանակ ո՜րքան օգուտ երեխայոց, ո՜րքան խրատ և օրինակ նոցա մաքուր սիրտերը մաքուր պահելու, ազնիւ, ճշմարտասէր և բարոյական մարդ դարձնելու: Այս ասածներիս ճշմարտութիւնը կարծում ենք անհերքելի և ընդունելի ամենեցուն: Մեր թարգմանած գիրքը, որ գրեթէ բոլոր Եւրոպայի ազգերը թարգմանել են իւրեանց լեզուով և և արդէն քանի քանի անգամ տպագրել են, կարող է պարծենալ բոլոր վերոյիշեալ յատկութիւններով, ուրեմն և իրաւաբար լինել օգտակար և գեղեցիկ գիւտ մեր երեխայոց համար, ուզում էինք ասել՝ երեխայոց գրականութեան, բայց դժբաղդաբար դեռ ևս այդ նախանձելի բառը գործածելու իրաւունք չունինք, ըստ որում մեր խեղճ երեխայքը միայն երկու հատ ու կէս գիրք ունին կարդալու, դոքա ևս աննպատակ

գրուած։ Ուրախութեամբ և անվախ տառաջարկումենք մեր սիրելի տղայոց և աղջկանց այս Գերմանացւոց երկու ուսումնական եղբարց երկասիրութիւնքը։ Եթէ հաճելի լինի մեր այս առաջին փորձը՝ որ, տարակոյս չըկայ, շատ պակասութիւններ ունի, ուրախութեամբ կըշարունակենք թարգմանել և լոյս ընծայել այդ ուսումնականների առակների լաւագոյնները։ Մեր աշխատութեան վարձքը պիտի լինի մեր սիրելի Հայ տղայոց և օրիորդաց օգուտը, որ կարող են քաղել այս տկար վաստակից։ Համոզուած ենք, որ գանձանակը մեր չնչին լումայով չի հարստանալ. բայց երբ այդպիսի լումաները օր ըստ օրէ շատանան, այն ժամանակ մի գումար կըհաւաքուի, որը, անտարակոյս, բանի պէտք կըգայ։ Թող հարուստները և ունեւորները շատ ձըգեն, ոսկի դրամներ ձգեն. մենք շատ ուրախ և շատ շնորհակալ կըլինինք. բայց և թող երբէք չարհամարհեն աղքատի անկեղծ ու բաց սրտով ձգած լուման։

Թարգմանիչ։

ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ԱԶԳԱՅԻՆ

# ԱՌԱԿՆԵՐ

---

## 1

### Պարիկների պարգևը։

Մի դերձակ և մի դարբին միասին ճանապարհորդում էին։ Մի երեկոյ, երբ արևը մայր էր մտել սարի քամակում, նոքա լսեցին երաժշտութեան ձայն, որ քանի մօտանում էին՝ այնքան պարզվում էր։ Սա մի անսովոր եղանակ էր, բայց այնպէս քաղցըր, այնպէս գեղեցիկ, որ նոքա մոռանալով բոլոր իւրեանց յոգնութիւնը ուղևորուեցան մեծ քայլերով դէպ ի այդ կողմը։

Լուսինը արդէն բարձրացել էր երկնակամարի վերայ, երբ նոքա հասան բլուրի մօտ, որի վերայ մի բազմութիւն կարճահասակ այր և կին մարդկանց ձեռք ձեռքի բռնելով շրջանակ կազմած՝ պար էին գալիս. դոքա մի և նոյն ժամանակ հնչեցնում էին օդը գրաւողական երգերով, որոնց

ձայնը լսելով մեր ճանապարհորդները դար-
ձել եկել էին այդ կողմը: Մէջ տեղումը
կանգնած էր մի ծերունի՝ փոքր ինչ բարձր
ուրիշներից, գոյն զգոյն զգեստ հագած և
բոլոր կուրծքը ճերմակ մօրուքով ծածկած:
Երկու ուղեկիցք զարմանքից անշարժ մնա-
ցին, նայելով կաքաւիչների վերայ: Ծերու-
նին նոցա նշանայի արաւ մօտենալու և կար-
ճուկ կաքաւիչները բացին շրջանակը: Դար-
բինը մօտաւ առանց այլևայլութեան, նորա
կանակը փոքր ինչ բլրաձև էր, ուստի և
նա համարձակ էր ինչպէս բոլոր սապա-
տողք:

Պերճակը առաջ փոքր վախեցաւ և մը-
նաց յետևումը. բայց տեսնելով ընդհա-
նուրի ուրախութիւնը՝ ոյժ առաւ և մօտաւ.
իսկոյն շրջանակը փակուեցաւ և փոքրիկ
ստեղծուածները սկսեցին երգել, պար գալ
վերվեր թռչկոտելով: Իսկ ծերունին, հա-
նելով գօտուց կախած մեծ դանակը, ըս-
կսաւ սրել. երբ բաւականին սրեցաւ, դար-
ձաւ դէպ ի անծանօթների կողմը. խեղճե-
րի լեզուները վախից պապանձեցան, բայց
այդ վախը երկար չըտևեց. ծերունին բըռ-
նեց դարբինը և ձեռքի մի շարժուածքով
բոլոր նորա մազը և մօրուքը ածիլեց, յե-

տոյ նոյնը արաւ դերձակին: Երբ որ սըր-ծաւ այդ գործողութիւնը, բարեկամաբար զարկեց նոցա ուսերին կարծես թէ կամե-լով յայտնելու, որ նոքա խոհեմութիւն արին, որ թողուցին առանց յանդիմանու-թեան ածիլել և նոցա վախը ցրուեցաւ: Յետոյ նա մատով ցոյց տուաւ կոյտ ածուխ, որ նոցա մօտը դիզած էր և նշանացի արաւ լցնել այդ ածուխով իւրեանց գրպանները: Երկուքն-էլ հնազանդեցան՝ չիմանալով թէ ի՞նչ բանի պէտք կըգան դոքա, և շարունա-կեցին ճանապարհը գիշերելու համար մի իջևան գտնել: Երբ հասան հովիտ, վանքի զանգակը զարկեց տասներկու ժամ, իսկոյն երգեցողութիւնը դադարեցաւ, ամենայն ինչ աներևութացաւ և նոցա աչքի առաջ մնաց ամայի հովիտը լուսինով լուսա-ւորուած:

Երկու ճանապարհորդք գտան մի իջե-ւան և պառկեցան յարդի վերայ չըհա-նուած. իսկ ածուխները նոյնպէս մոռացան հանելու յոգնութեան պատճառով: Այս անսովորական բեռը, որ նոցա շատ ծան-րացնում էր, սովորականից կանուխ վեր-կացրեց: Նոքա տարան ձեռքերը գրպան-ներին և չէին հաւատում իւրեանց աչքե-

րին, տեսանելով գրպանները լի ոչ թէ ածուխով, այլ զուտ ոսկով: Մօրուքները և մազերը նոյնպէս մեծացել էին: Այսու-հետև նոքա հարստացած էին, միայն դար-բինը ըստ իւր ժլատ բնաւորութեան բեր-նէբերան լցրել էր գրպանները, ուստի նորա ձեռք բերածը երկու անգամ աւելի էր դերձակից: Բայց ագահ մարդը երբէք չէ բաւական իւր ունեցածովը և միշտ կը-կամենայ աւելի ունենալ: Այսպէս ժլատ դարբինը առաջարկեց դերձակին մի օր այլ ևս սպասել, և վերադառնալ երեկոյին ծերունու մօտ, որ էլի փող առնի և տուն բերի:

Դերձակը մերժեց, ասելով, իմ ունե-ցածս ինձ բաւական է, ես շատ գոհ եմ, միայն կըցանկամ լինել դերձակապետ և ամուսնանալ իմ չքնաղ առարկային հետ (այսպէս կոչում էր նա իւր հարսնացուն) և ես կըլինիմ այն ժամանակ բաղդաւոր մարդ. սակայն իւր ընկերին սիրտը չըցա-ւեցնելու համար համաձայնեցաւ մի օր էլ մնալ:

Երեկոյին դարբինը առաւ ձգեց իւր ուսերի վրայ երկու պարկ մեծ աւար տուն բերելու յուսով և ընկաւ ճանապարհ դէպ

ի բլուրը։ Ինչպէս նախընթաց գիշեր, կարճահատակ մարդիկը դուրս ելան երգելով և պար գալով. ծերունին նորան դարձեալ ածիլեց և նշանացի տրաւ ածուխ առնելու։ Մեր ժլատը առանց երկար մըտածելու լցրաւ իւր գրպանները ու պարկը որքան որ կարելի էր, վերադարձաւ ուրախ ուրախ տուն և չըհանուած պառկեցաւ։ „Երբ իմ ոսկիս կըսկսէ ծանրաբեռնել, ասաց նա, իսկոյն կըզգամ“. և քուն եղաւ վերջապէս մեծ յուսով առաւօտեան Կրեսոսի պէս հարուստ զարթելու։

Աչքերը բացուածին պէս՝ այցելութիւն տրաւ իւր գրպաններին. բայց ո՜րքան չի խառնեց, որքան չի փնտռեց, բացի սև ածուխից ոչինչ չըգտաւ։ „Գոնէ, մտածում էր նա, ինձ մնում է երեկ գիշերուայ ձեռք բերած ոսկիս“։ Գնաց տեսնելու, բայց աւա՜ղ. այդ ոսկին նոյնպէս ածուխ էր դարձել։ Սևացած ձեռքը տարաւ ճակատին և զգաց որ գլուխը ճաղատ ու ածիլած էր, որպէս և կզակը։ Սակայն դեռ ևս նորան յայտնի չէր անբաղդութեան մեծութիւնը. շուտով նկատեց որ քամակի կուզին՝ մի ուրիշ կուզ աւելացել էր առաջից։

Այժմ զգալով որ այդ պատիժը իւր ա-

դահութեան համար էր ստացել, սկսաւ աղիողորմ ձայնով լալ: Բարեսիրտ դերձակը, զարթնելով նորա աղաղակից, մխիթարեց կարողութեան չափ և ասաց. „Մենք ընկերակից էինք և միասին ճանապարհորդեցինք. մնացի՛ր ինձ հետ, իմ գանձը երկուքիս-էլ բաւական կըլինի“:

Նա կատարեց իւր խօսքը. բայց դարբինը ստիպուեցաւ մինչև մահը երկու կուզ կրել և ծածկել իւր անմազ գլուխը գըլխանոցի տակ:

---

## 2

### Երեկուան նախարարը.

Ժամանակով կար մի աղքատ ռամիկ Խէյգէլայն անունով: Սորան պատահեցաւ մի անգամ տանել խուրձ անտառափայտ հռչակաւոր կախարդի մօտ, որ սեղանի առաջ բազմած՝ ուտում էր հոյակապ ճաշ և խմում էր ամենապատուական գինի: Այս տեսարանը շատ գրաւեց մեր ռամիկին, որ աչքերը ցցած սեղանի վերայ՝ սկսաւ

աղաչել և ասել. „Չէ՞ կարելի արդեօք, որ սովորացնես ինձ ևս այդպէս երևելի կախարդ լինել“։

— Ընտարակոյս, կարելի է, պատասխանեց կախարդապետը ռամկին, գեղեցիկ և երևելի կախարդ լինելու համար հարկաւոր է միայն ծախել եզերըդ, սայլակըդ, գնել այբբենարան, Գերմանական հանդերձ, ահա՛ այսպիսի գործիներ որ տեսնում ես սեղանիս վերայ և սենեակիդ դրան վերայ գրել. «Այս տեղ կենում է երևելի կախարդ»։

Մեր ռամիկը խիստ հասարակ և պարզամիտ մարդ էր. կախարդապետի խօսքերը հալած իւղի տեղ ընդունեց, և բոլոր պատուէրքը կատարեց։ Դեռ ևս չէր կարողացել աչքը բանալ և տեղաւորուել, մին-էլ տեսնես դրացի կալուածատէրից գողացան մեծ գումարի փող։ Կալուածատէրը երկար չըմտածեց, հրամայեց լծել ձիերը և գնաց ուղիղ դէպի քաղաք։ Ցանկարծ փողոցում մի դրան վրայ տեսաւ վերնագիր. «Այս տեղ կենում է երևելի կախարդ»։ Զափազանց ուրախանալով այս դիպուածից՝ հրամայեց կանգնեցնել ձիերը և բաղխել դուռը։ Դուրս է գալիս ռամիկը, իսկ կալուածատէրը հարցուցանում է։

—» Այս տե՞ղ է կենում կախարդը:

— Այդ կախարդը ես ինքս եմ, պատասխանեց ռամիկը:

—» Ուրեմն գնանք միասին: Դու երևելի կախարդես, կընշանակէ պարտական ես ինձանից գողացած փողերը գտնել:

— Լսում եմ, պատասխանեց միւսը, միայն ես կարող չեմ գնալ առանց կնոջս Մարիամին:

Կալուածատէրը չէ՛ չասաց և տարաւ իւր հետ երկուսին-էլ:

Երբ որ մտան նորա ճոխ պալատը, սեղանը արդէն ծածկած էր սփռոցով և կալուածատէրը ասաց մեր կախարդին:

— Կըկամենա՞ս մեզ հետ ճաշել:

— «Ինչո՞ւ չէ, պատասխանեց ռամիկը,— միայն թող Մարիամս-էլ նստի ինձ հետ:

Եւ ահա՛ նորա երկուքն-էլ նստած են տան տիրոջ սեղանի առաջ:

Մտնում է սպասաւորը առաջին սկուտեղով, իսկ ռամիկը զարկում է իւր կընոջ կողքին ասելով.

— Լսիր, կին, սա բոլորի սկիզբն է:

Դորանով նա կամեցաւ ասել ճաշի ըսկիզբը. բայց սպասաւորը այլապէս հասկացաւ և կարծեց որ կախարդը ուզում էր

տեսել թէ՝ նա գողերի առաջինն է։ Սպասաւորի սիրտը վախից դող ընկաւ և, վերադառնալով դէպ իւր ընկերակիցքը, ասում է. — Եղբարք, մեր բանը բուրդ է, կախարդին ամենայն ինչ յայտնի է. նա ասաց որ ես ամեն բանի սկիզբն եմ։

Երկրորդ սպասաւորն-էլ վախեցաւ դահլիճ մտնել, երբ որ իւր կարգը եկաւ։ Դեռ ոտը շեմի վրան դրած չէր, ռամիկը զարկեց կնոջ կողքին ասելով՝ — Ահա՛, այդ երկրորդն է։

Երրորդ սպասաւորը լսում է նոյն ակնարկութիւնը, և մեր գողերը չըգիտէին ո՞ւր փախչել վախից։ Սակայն մտնում է չորրորդ սպասաւորը, բերելով կափարիչով ծածկած սկուտեղ. սկուտեղի մէջ դրած էր խեցգետին։

Տանուտէրը ասում է կախարդին. —«Ահա քեզ դիպուած ցոյց տալու քո գիտութիւնը. իմացի՛ր, տեսնենք, ի՞նչ գտնուում է այս սկուտեղի մէջ»։

Ռամիկը տխրութեամբ նայեցաւ սկուտեղի վրայ, հնար չըգտնելով փորձանքից ազատուելու։

— Ո՜հ, բացագանչեց նա խորին հառաչանքով, խե՜ղճ, խե՜ղճ, խեցգետին։

Նորա անունը նոյնպէս Խեցգետին էր։

Այն ինչ կալուածատէրը լսեց այս, ապշած մնաց տեղումը։

— Ա՜հ, այժմ կասկածել հարկաւոր չէ, ասաց նա. — կընշանակէ դու կ'իմանաս, ով գողացել է ինձանից փողերըս։

Այս բանիս վրայ սպասաւորը սաստիկ այլայլած, նշանացի է անում մեր ռամիկին հետեւել նորան մի ուրիշ սենեակ։ Ռամիկը գնաց նորա քամակից եւ չորս սպասաւորքն էլ խոստովանուեցան նորան, որ տան տիրոջ փողերի գողացողքը ինքեանք են, եւ պատրաստ են վերադարձնել բոլոր գումարը տիրոջ եւ կախարդին-էլ պարգեւել շատ փող, միայն խոստանայ չըմատնել նոցա։ Յետոյ գողերը տարին նորան այն տեղ, ուր պահել էին գողացած փողերը։ Կախարդը, բաւական իրանից եւ իր ճակատագրից, գընաց դարձեալ սեղանատունը եւ ասում է տան տիրոջ.

— Դէ՛, պարոն, հիմի ժամանակ է խորհուրդ անել իմ գրքի հետ. Նա անպատճառ կ'ասէ ինձ, որ տեղ են քո փողերը։ Այս խօսքերը լսելով հինգերորդ սպասաւորը, պահուեցաւ տան տիրոջ կրակարանի մէջ, ինքներեն ասելով. — «Տեսնեմ մի՝

ղո՞րդ այս կախարդը շատ բան գիտէ, թէ նա մարդ խաբում է»:

Ռամիկը սաստիկ զբաղած՝ իր այբբենարանը կարդում է այս կողմ այն կողմ շրջելով, և կարծես թէ մի բան, Աստուած գիտէ ինչ, պնտրում է ու չի կարող գտնել և անհամբերութեամբ ասում է. — „Բայց դու անպատճառ այս տեղ նստած պիտի լինիս, կամիս չըկամիս դուրս եկ այս տեղից“:

Սպասաւորը, որ պահուած էր վառարանի մէջ, լեղապատառ դուրս թռաւ այն տեղից, աղաղակելով. — Այս կախարդը ամէն բան գիտէ:

Մեր ռամիկը այս բանից յետոյ ցոյց տըւաւ կալուածատիրոջ փողերի տեղը, բայց չասաց գողերի անունը, ուստի դորա համար ստացաւ կրկին վարձատրութիւն կալուածատէրից և գողերից. այն օրից սկսած հարստացաւ ու մինչև մահ երջանիկ կեանք վայելեց:

---

## 3

### Փորձանք.

Երբ փորձանքը գայ, այնուհետեւ հնար չըկայ նորանից ազատուելու, ուզէս պատէ-պատ ընկիր և գլուխդ քարին տուր:

Կար մի աղքատ մարդ, այնպէս աղքատ, որ չունէր անգամ հնոցը վառելու փայտ, սակայն ցուրտը անտանելի էր: Նա գնաց անտառ ծառ կտրելու համար, բայց ասես թէ գիտութեամբ բոլոր ծառերը բանի պէտք չէին գալիս, մէկ քանիսը խիստ մեծ էին, միւսները խիստ փոքր:

Կամաց կամաց առաջ գնալով՝ գտաւ վերջապէս մի դալար ծառ, միանգամայն յարմար և պիտանի իւր դիտաւորութեան: Դեռ խեղճը չէր բարձրացրել կացինը, մին էլ տեսնես խիտ անտառից դուրս վազեցին բազմաթիւ գայլեր և ուղիղ յարձակուեցան նորա վերայ այնպիսի սարսափելի աղաղակով, որ վախից ողորմելին ձգեց ձեռից կացինը և փախաւ առանց յետեւը նայելու: Վազեց վազեց և վերջապէս հասաւ կամուրջի մօտ, բայց չար բախտից այնպէս պատահեցաւ, որ այդ ժամանակ ջուրը սաս-

տիկ մնացել էր, ուստի կամուրջը նոյն րոպէին խորտակուեցաւ, երբ մեր Թշուառականը կամենում էր ոտքը վրան դնելու միւս ափը անցնել: Ի՞նչ անել այս տեղ, մնալ չէր կարելի, կատաղած գայլերը կը գային և անշուշտ պատառ պատառ կ'անէին. և ահա փորձանքով ստիպուած Թշուառականը նետուեցաւ ջուրը, բայց այս տեղ էլ սպասում էր նրան մի այլ փորձանք. Լողանալ նա տակաւին չգիտէր, և ուստի իսկոյն բանալու պէս տակը գնաց: Այդ ժամանակ ափումը նստած էին երկու ձըկնորս: Տեսնելով խեղճի չար վիճակը, նոքա իսկոյն ընկան ջուրը և բարեյաջողութեամբ հանեցին, դրին նորա հին շրջապատի տակ արեգակի առաջ, որ տաքանայ և յուշաբերուի: Ե՛րբ նա սթափեցաւ և ուզեց շնորհակալ լինել ձըկնորսներից ու պատմել նոցա իւր արկածքը, յանկարծ հին շըրջապատը փուլ եկաւ և ճնշեց նորա իւր տակ:

---

## 4

### Մեծ Հայր և Թոռն.

Կար մի ծեր աղքատ՝ կոյր աչքերով, պինդ ականջներով և դողդոջուն ծունկեկերով: Երբ որ նա նստում էր սեղանի առաջ, հազիւ թէ կարողանում էր բռնել դրդալը, միշտ թափում էր ծածկոյթի վրայ մսաջուրը և երբեմն ևս բերանից վազցընում էր:

Նորահարսը և ինքը որդին մեծ տհաճութիւն զգացին դէպ ի նա այդ բանի համար, և վերջապէս նշանակեցին նորա մի առանձին անկիւն կրակարանի յետևը, դընելով դիմացը փոքրիկ կիսաբեկ սկուտեղով կերակուր: Ծերունին միշտ արտասուալից աչքերով նայում էր տխրութեամբ սեղանի կողմը: Մի օր սկուտեղը, որ նա դժուարութեամբ բռնում էր իւր դողդոջուն ձեռքով, ընկաւ գետինը ու ջարդ ու փշուր եղաւ: Երիտասարդ հարսը սաստիկ բարկացաւ և սկսաւ մեղադրել նորան: Խեղճը գլուխը խոնարհած, չըհամարձակեցաւ անգամ պատասխան տալ: Նորա համար գնեցին երկու դահեկանի մի փայ-

տեայ սկուտեղ, որի մէջ այնուհետև սովորութիւն արին տալ կերակուրը:

Մէկ քանի օր անցած, նորա թոռը որ չորս տարեկան տղայ էր, հաւաքում էր գետնից փոքրիկ փայտի կտորներ: Ծերունու որդին և հարսը տեսնելով տղայի ըզբաղմունքը, հարցրեցին՝ ի՞նչ ես անում այդտեղ, սի՛րելի:

— Սա խողովակ է, պատասխանեց մանուկը, հօրս և մօրս կերակուր տալու համար, երբ նոքա ևս կըծերանան:

Մարդ ու կնիկը լուռ ու մունջ նայելով մէկ մէկու վերայ, սկսեցին լալ. դարձեալ ընդունեցին իւրեանց մեծ հայրը սեղան, և այնուհետև հրամայեցին միշտ սեղան նստել առանց քիթ պռունկ ցոյց տալու:

---

## 5

### Երկայնակեցութիւն.

Երբ որ Արամազդ ստեղծեց աշխարհ, կամեցաւ նշանակել ժամանակ երկայնակեցութեան, իւրաքանչիւր արարածի ցանկութեան համեմատ: Եկաւ էշը և ասում է.

— Արամազդ, քանի՞ տարի կեանք ես նշանակում ինձ:

— «Երեսուն, բաւակա՞նէ քեզ համար:

— Ո՜հ, մեծ արարիչ աշխարհի, ինչ-պէս կարելի է այդ, խիստ շատ է: Մտա-ծի՛ր մի, ինչպէս դժուար և անտանելի է իմ կեանքը. առաւօտից մինչև գիշեր կը-րի՛ր ուսերիդ վերայ ծանր բեռներ, տար ջաղացք պարկերով ալիւր, որ ուրիշների համար հաց եփեն, իսկ քեզ դրա վարձա-տրութիւն քացիներ տան: Ո՛չ, խնդրեմ, ի սէր Աստուծոյ կարճացրու այդ տրտմու-թեան և չարչարանքի ծանր ժամանակը:

Ողորմած Արամազդը մեղքացաւ էշին և որոշեց նրան տասնըութ տարի կեանք: Էշը մխիթարուած դուրս եկաւ և նրա տեղ մտաւ շունը:

— Քանի՞ տարի ուզում ես ապրել, հար-ցրեց նորանից Արամազդը. ահա էշը ասում է, թէ երեսուն տարի նրան համար չափա-զանց շատ է, բայց դու, երևի համաձայն չես նրա կարծիքին և կըկամենաս աւելի ապրել:

— «Ա՞յ թէ քո կամքը այդպէս է, արա-րիչ: Դէ՛, ինքդ քննիր, ո՞րքան իմ կեան-քումս պէտք է վազվզել. կարո՞ղ են ար-

դեօք այս շան կեանքում երկարի դիմանալ իմ խեղճ Թալթերս. իսկ երբ ձայնս կտրվի որ հաչեմ, ոյժս-էլ գնայ որ խածնեմ, ի՞նչ կ'անեմ այն ժամանակ. մի անկիւնից միւսը քարշ-ա-քարշ գնալով մռմռալ. ո՛չ, ո՛չ։

Ամենողորմած Արամազդը ընդունեց նորա ճշմարտութիւնը և որոշեց տասներկու տարի կեանք։ Կարգը եկաւ կապիկին։

—» Դու խօ ուրախութեամբ յանձն կ'առնուս երեսուն տարի ապրել, հարցրեց Արամազդը, ինչու որ դու դատապարտուած չես աշխատութեան. էշի և շան պէս քո բանը գործը դուարձանալ է և մին-էլ ատամներդ ցոյց տալ։

— Տե՛ս խնդրեմ, քեզ միայն այդպէս է երևում, բայց իսկապէս բոլորովին այդպէս չէ։ Ես պարտաւորուած եմ անդադար և անխոնջ կատարատել ու դժուարին խեղկատակութիւններ անել՝ մարդիկ ծիծաղեցնելու համար։ Սակաւ կըպատահի, որ նոքա ինձ խնձոր ձգեն, այն ևս կըխածնես — միշտ դառն է լինում։ Ծիծաղիս տակ միշտ ծածկըվում են առատ և դառն արտասունքներ։ Ո՛չ, ո՛չ, չեմ կարող երեսուն տարի ապրել։ Արամազդ խղճացաւ նրա վրայ-էլ և տուեց միայն տասն տարի ապրելու։

Ահա, վերջապէս գալիս է ուրախ, ժիր և առողջ մարդը, և խնդրում է Արամազդից իր կեանքի սահմանը:

— «Շատ բարի, քեզ տալիս եմ երեսուն տարի, ասաց Արամազդը, բաւակա՞ն է թէ ոչ:

— Ո՜հ, ի՞նչպէս կարելի է այդքան փոքր, բացագանչեց մարդը, ես չեմ կարող այդ կարճ միջոցում տեղաւորուելու և սեպհական տուն ունենալ: Թող այդ, մի՞թէ կարող են այդ կարճ միջոցին տնկած ծառերս ծաղկել ու պտուղ տալ: Ի՞նչպէս մեռանիլ դեռ չիմացած կեանքի երջանկութիւնը:

Ո՜վ տէր երկնքի ու երկրի, աւելացրո՛ւ ինձ մի փոքր ևս:

— «Լաւ, կ'աւելացնեմ քեզ էշի տասնըութ տարին, ասաց ողորմած Արամազդը:

— Այդ էլ դեռ փոքր է:

—» Թէ այդպէս է, ահա տալիս եմ քեզ էլ տասներկու տարի շան կեանքից:

— Այդ էլ շատ փոքր է:

— «Բարի, ահա՛ քեզ այլ ևս տասը տարի կապիկի կեանքից, տես աւել մի՛ ուզիր:

Մարդը գնաց, բայց դարձեալ անբաւական իւր վիճակից: Եւ ապա այն օրից մարդս բնակվում է մինչև եօթանասուն տարի: Առաջին երեք տասնեակը բնական տարի-

ներ են, բայց շատ շուտ են անցանում ։ Այդ հասակում մարդս ժիր, առողջ ու զուարթ է լինում, ուրախութեամբ աշխատում է և գիտէ վայելել կեանքը։ Գալիս են էշի տարիները. այդ միջոցում մարդս անցանում է մի հոգսից դէպ ի միւսը. ուրիշներին կերակրելու համար կրում է հացեղէն, իսկ աշխատութեանը վարձատրութիւն ստանում է զարկ և քացի։ Ահա՛ շան կեանքը էլ եկան. նստում է մարդը տան անկիւնում և քրթմնջում է քթի տակից, խածնել ոչ ոքին չէ կարող, ատամներ չունի։ Անցնում է այն ժամանակն էլ և վերջանում է կեանքը կապիկի տարիներով. այդ միջոցին մարդս իսպառ տկարանում է, գլուխը ըսկսում է երերալ, կրկնում է նա միշտ մի և նոյն բաները և ամենայն ինչ բնազդութիւնով ու սովորութիւնով է անում, բայց աւա՜ղ, շատ անգամ նորա անմեղ ձեռնարկութիւնները ծիծաղելու առարկայ են լինում ջահիլներին։

---

## 6

### Վէց հոգի չըհաւանէնք ամէն բանի.

Մի ամէն արհեստի ընդունակ մարդ մտաւ զինուորական պաշտօն արքայորդու մօտ և ծառայեց նորան մեծ քաջութեամբ: Երբ որ պատերազմը վերջացաւ վարձատրութիւն չըտուած հրամայեց նորան վերադառնալ իւր հայրենիքը: Այս տեսակ խաբեբայութիւնը շատ անհաճոյ թուեցաւ զինուորականին, ուստի մտադիր եղաւ, եթէ ընկերներ գտնի, ստիպել թագաւորին տալու բոլոր գանձը իրեն այդ անիրաւութեան համար:

Զարացած մտաւ անտառ և տեսաւ այն տեղ մի մարդ, որ մի ձեռով արմատախիլ էր անում վեց ծառ, կարծես թէ այդ ծառերը հասարակ կանաչներ լինէին. դառնալով դէպ ի այդ ուժեղը հարցրեց. „Կամի՞ս հետևել ինձ և լինել ծառաս“:

— Մեծ ուրախութեամբ, պատասխանեց ուժեղը. — միայն այս խուրձս հարկաւոր է առաջ տանել տալ մօրս:

Եւ առնելով ծառերից մինը, կապեց նորանով միւսները, ձգեց խուրձը ուսերի վերայ և տարաւ տուն: Յետոյ դարձաւ իւր

պարոնի մօտ, որ ասաց նորան. „Մենք քո հետ երկու հոգի կըհասնենք ամեն բանի“։

Փոքր ինչ հեռու նորա պատահեցան որսորդի, որ ծնկաչոք ուղղում էր իւր հըրացանը։ Զինւորը հարցրեց „Որսո՛րդ, դէպ ի որի՞ն ես ուղղում հրացանդ“։

Նա պատասխանեց. — Երկու մղոն հեռու այս տեղից կաղնու ոստի վերայ նըստած է ճանճ. ես կամենումեմ զարնել նորա ձախ աչքին։

— Ո՜, ո՜, երթանք ինձ հետ, մենք երեք հոգի կըհասնենք ամեն բանի։

Որսորդը հետեւեց նոցա և հասան նոքա եօթը ջաղացքին, որոնք արագ արագ պըտոյտվում էին իւրեանց թեւերով, թէև տակաւին հողմ չըկար ոչ աջակողմից և ո՛չ ձախակողմից, այնպէս, որ տերեւները անդամ չէին խշխշում ։ Զինւորականը ասաց. „Չեմ կարող հասկանալ ի՞նչպէս պտոյտվում է այս ջաղացքը. օդը միանդամայն անշարժ է“

Երկու մղոն անցած նոքա տեսան ծառի վերայ մի մարդ, որ մի ռունգը փակած փչում էր։

— „Ի՞նչ ես փչում այդ տեղ, հարցրեց զինւորը։

— Երկու մղոն հեռու այս տեղից, պա-

տասխանեց նա, ինչպէս տեսնում էք իմ սիրելիք, կամ եօթն հողմաղացք, և փըր-չում եմ, որ նոքա պտոյտ գան:

— «Ո՛, երթանք միասին, — ասաց զին-ւորը, — մենք չորս հոգի կըհասնենք ամեն բանի:

Նա իջաւ ծառից և գնաց ընկերութեան հետ:

Մի քանի ժամանակից յետոյ, նոքա պատահեցան միոտանի մարդու. միւս ոտը նա հանել էր և դրել իւր մօտ:

— «Ա՛յ զարմանալի մարդ, — ասաց զին-ւորը, — երևի կամենում է հանգստանալ:

— Ես արագոտն եմ, պատասխանեց միոտանին, — շատ արագ չըգնալու համար մի ոտս հանեցի, բստ որում երկու ոտով այնպէս շուտ եմ վազում, որ ծիծեռնակը անգամ չի կարող ետևիցս հասնել:

— «Ո՛, ե՛կ ինձ հետ, մենք հինգ հոգի կըհասնենք ամեն բանի:

Արագոտը գնաց նոցա հետ և շուտով նոքա պատահեցան մի մարդու, որի գլուխը և ականջները ծածկած էին փոքրիկ գըլ-խարկով:

Չընայելով որ ես զգումեմ մեծ յար-գանք դէպ ի ձեր անձը, համարձակվում

եմ խորհուրդ տալ, որ ուղիղ հագնէք գլխարկը, և այս թէ ոչ ձեր գլուխը կարծես թէ բոժոժաւոր լինի:

— Երբէ՛ք, երբէ՛ք, պատասխանեց նա. երբ ես ուղիղ եմ հագնում գլխարկս, այնպէս ցուրտ է անում, որ թռչունները սառում են օդի մէջ և անկենդան ընկնում են գետնի վերայ:

— Ո՛, ուրեմն երթանք միասին, ասաց զինուորը. մենք վեց հոգի կըհասնենք ամեն բանի:

Եւ եկան նոքա վեց հոգի քաղաք, ուր արքայորդին հրատարակել էր թէ՝ ով յանձն առու լինի վիճել նորա աղջկայ հետ արշաւանքի մէջ, կըստանայ նորա ձեռքը, եթէ յաղթի, և կըզրկուի գլխից եթէ յաղթուի: Զինուորը ներկայացաւ արքայորդուն և խընդրեց հրաման իւր տեղը ծառաներից մէկին ուղարկել: „Շատ բարի, պատասխանեց արքայորդին, բայց եթէ նա չըյաղթի, այն ժամանակ և նորա և քո գլուխը կըկտրեն“:

Այսպիսի պայման դնելով, զինուորը հրամայեց իւր արագոտին կապել միւս ոտքը, վազել անյապաղ և գործ դնել ամենայն միջոց, որ յաղթող հանդիսանայ: Պայմանադրած էր, որ նա կըլինի յաղթող.

ով առաջինը կբերի աղբիւրից ջուր, որ հոսում էր քաղաքից շատ հեռու:

Արագոտը և արքայադուստրը ստացան մի մի բաժակ և միևնոյն ժամանակ ընկան ճանապարհ. այն ինչ արքայադուստրը մի քանի քայլ էր արել, արագոտը արդէն անհետացաւ աչքից, հասաւ աղբիւր, առաւ ջուր և դարձաւ յետ: Բայց ճանապարհին յոգնութիւն զգալով, դրաւ բաժակը գետնի վերայ և պառկեցաւ ձիու գանգի վերայ, որ ճանապարհին գտել էր, որպէս զի բարձի կոշտութիւնը չթողնէ նորան երկար քնել:

Մինչ այս մինչ այն, արքայորդու դուստրը, որ վազում էր այնքան լաւ, որքան կարելի էր հասարակ մարդու, հասաւ աղբիւր, լցրաւ բաժակը և շտապով յետ դարձաւ: Նա պատահեցաւ արագոտին ննջած: „Լաւ, ասաց ինքնիրեն ուրախացած, թշնամին այժմ իմ ձեռումն է“: Թափեց նորա բաժակի ջուրը և շարունակեց իւր ճանապարհը:

Ամենայն ինչ կորած էր, եթէ, բարեբաղդաբար, որսորդը, որ կանգնած էր ամրոցի տանիքի վերայ, չըտեսնէր այս խորդութիւնքը իւր հեռատես աչքերով: Հէ՜մ, լաւ չէ, եթէ արքայադուստրը յաղթի նորան,

մտածեց նա, և իւր հրացանի մի հարուա-ծով Թռցրեց նորա գլխի տակի բարձը, այս-ինքն՝ ձիան գանգը, առանց մի վնաս պատ-ճառելու պառկողին: Արադոտը, զարթնելով հրացանի ձայնից, տեսաւ դատարկ բաժակը և հասկացաւ խաղի էութիւնը: Ինչևիցէ, պա-հելով հոգու ներկայութիւնը, նորից գնաց աղբիւր, նորից լցրաւ բաժակը, և դարձաւ պալատ տասը վայրկեան առաջ արքայա-դստերից: „Ահա, ոտքերս վերջացան ջարդ-ու փշուր եղան, ասաց նա, ինչ որ մինչև այժմ՝ արել էի՝ չի կուչվում՝ վազել“:

Արքային և նորա դստեր շատ անհաճոյ Թուեցաւ հասարակ և չքաւոր գինուորի յաղթութիւնը. ուստի վճռեցին սպանել նորան բոլոր ընկերների հետ միասին: Ար-քան ասաց իւր դստեր. „Ես գտայ հնար, մի՛ վախիր, չենք ազատուիլ մեր ձեռքից„: Յետոյ, մեծարանքի պատրուակով, տարաւ նոցա մի սենեակ, որի յատակը, դռները և լուսամուտքը երկաթից էին շինած:

Սենեակի մէջ տեղ դրած էր սեղան գե-ղեցիկ ճաշով: „Մտէ՛ք, ասաց արքան, և լաւ պատիւ տուէք ճաշին“: Եւ երբ մտան նոքա, հրամայեց բոլոր դռները փակել դրսից պարզունակներով: Յետոյ կանչեց իւր

խոհարարը և հրամայեց կրակ վառել այդ սենեակի տակ և պահել այդ կրակը մինչև որ յատակը իսպառ կարմրի։ Նորա հրամանը կատարուեցաւ. շուտով՝ վեց ընկերք զգացին տաքութիւն. առաջ կարծեցին որ այդ տաքութիւնը յառաջանում է մեծ ախորժակից, որով ուտում էին համեղ կերակուրը. բայց ջերմութիւնը անդադար սաստկանում էր, այնպէս, որ նոքա վերկացան և կամեցան դուրս գնալ. միայն, տարաբաղդաբար, տեսան այժմ որ դռները և լուսամուտքը փակած էին, և պարզ հասկացան արքայի դիտաւորութիւնը։ „Սակայն նա յաջողութիւն չի ունենալ, ասաց փոքրիկ գլխարկով մարդը. որովհետև այնպիսի ցուրտ կըբերեմ , որ կրակը ամենևին չի կարող դիմանալ“։ Եւ դնելով գլխարկը ուղիղ գլխի վերայ, այնպէս ցուրտ բարձրացաւ, որ նոյն րոպէին ջերմութիւնը անցաւ և ամանները սառեցան սեղանի վերայ։

Երկու ժամից յետոյ, արքայն համարելով նոցա խորոված, հրամայեց բանալ դուռը և եկաւ ինքը տեսնել նոցա դրութիւնը։ Բայց այրուելու դատապարտուածները, վեց հոգի ժիր և կենդանի նորա դիմաց վազեցին, յայտնելով որ մեծ ուրախու-

թեամբ պատրաստ են դուրս ելանել վոքր ինչ տաքանալու համար, ըստ որում սենեակի մէջ այնպէս ցուրտ է, որ կերակուրը սառել էր սեղանի վերայ։ Արքան, այլայլած բարկութիւնից, դարձաւ դէպ ի խոհարարը և հարցրեց թէ՝ ինչու համար չէր կարա-րել նորա հրամանը։ Բայց խոհարարը պա-տասխանեց․

— „Այս տաքացրի մինչև կարմրելը, ինք-ներդ նայեցէ՛ք“։

Երբ արքան համոզուեցաւ, որ յատակի տակ ճշմարիտ վառած էր դժոխական հուր․ սակայն այն վեց քարերը վնաս չէին կրել դորանից։

Երբ արքան միջոց որոնելով անհանգիստ հիւրերից ազատուելու, կանչեց գինուորը և ասաց․ „Եթէ հրաժարուես իմ աղջկայ ձեռ-քից, կըտամ քեզ այնքան ոսկի, որքան որ կամենաս։

— Ուրախութեամբ, ձերդ մեծութիւն, պատասխանեց գինուորը, տուէ՛ք ինձ այն-քան ոսկի, որքան կարող է տանել ծառա-ներիցս մինը, և ես կըհրաժարուեմ իմ իրաւունքից։

Երբ արքայի ուրախութիւնը անասելի էր, գինուորը ասաց նորան, որ երկու շաբաթից յետոյ կըգայ ոսկին առնելու։

Այդ միջոցին նա կանչեց տէրութեան բոլոր դերձակները և վարձեց նորա երկու-շաբաթում մի մեծ պարկ կարելու: Երբ պարկը պատրաստուեցաւ, այն ուժեղը, որ մի ձեռքով արմատախիլ էր անում՝ ահագին ծառեր, ձգեց ուսի վերայ և գնաց արքայի տունը: Արքան հարցրեց շրջապատողներից թէ՝ ո՞վ է այդ քաջը, որ տան մեծութեամբ կապոցը ուսի վրայ դրած տանում՝ է, և երբ որ իմացաւ՝ շատ վախեցաւ երևակայելով այն ահագին գումարը ոսկու, որ կարող էր մտնել այդ պարկի մէջ: Նա հրամայեց գլորել մի մեծ տակառ ոսկի, որ տասնըվեց մարդ հազիւ հազ կարողանում էին շարժել տեղից. բայց մեր Հերակլէսը բռնեց մի ձեռքով, ձգեց պարկի մէջ, և սկսաւ գանգատել թէ՝ բերածները այնպիսի չնչին բան է, որ պարկի տակը անգամ չը ծածկեց: Արքան հրամայեց բերել իւր բոլոր գանձը, բայց դեռ կէսը չըլցրաւ:

— «Ներէք այլ ևս, աղաղակում էր զին-ւորը, երկու կտոր փշրանքով մարդ չի կշտացնիլ»: Բերին էլ եօթը հարիւր սայլ ոսկի տէրութեան բոլոր սահմաններից, և այդ բոլորը լցած եզերի հետ միասին ձգեց նա պարկի մէջ: „Դէ՛, այժմ ինչ որ պա-

տանէի, կրծքիս մէջը, որ շուտով լցուէր, ապա ուժերը": Զգեց նա ինչ որ պատահե-ցաւ ձեռքի տակ, բայց այնու ամենայնիւ պարկի մէջ դեռ շատ դատարկ տեղ մնաց: „Չարկաւոր է վերջացնել, կարելի է թե-րալից պարկը ես կապել", ասաց նա, և կապելով պարկի բերանը, դրաւ ուսի վե-րայ և գնաց ընկերների մօտ. Արքան տես-նելով որ մի մարդ տանում է տէրութեան բոլոր գանձը, սաստիկ զայրացաւ և հրա-մայեց իւր հեծելազօր գնդին ձիու վերայ նստել, վազել նոցա քամակից և յափշ-տակել պարկը: Շուտով հասան զօրքերը նոցա յետևից աղաղակելով. „Դուք կալա-նաւորք էք, տուէք ոսկով պարկը, ապա թէ ոչ այս րոպէիս կտոր կտոր կ'անենք ձեզ":

— «Ի՞նչ էք երգում այդ տեղ, հար-ցրեց փչողը. մենք կալանաւորք ե՞նք: Ո՛չ, իմ․ սիրելիք, մի առաջ կաքաւեցէք օդումը:

Նա փակելով մի ռունգը, միւսով սկսաւ այնպէս փչել երկու զօրագնդի վերայ, որ բոլորէքեան բարձրացան երկինք սարերի և ձորերի վրայից: Մի ծեր դնդապետ սկսաւ թողութիւն խնդրել, որ ինը խոց ունի, և թէ այդպիսի քաջ մարդու հետ չէ արժան

այդպէս անամօթաբար վարուել: Փչողը դադարուեցաւ փոքր ինչ և գնդապետը անմիջապէս ընկաւ գետնի վրայ:

— „Գնա արքայի տունը, ասաց մեր քաջը, և յայտնիր նորան, որ որքան կամի մարդ ուղարկէ, բոլորին երկինք կըթռցնեմ“:

Արքան իմանալով այս դիպուածը, ասաց. „Թող գնան կորչեն այդ կախարդները, նոցա հետ չի կարելի գործ ունենալ:

Վեց հոգի բոլոր գանձը տուն տարան, բաժանեցին իւրեանց մէջ և մինչև մահ երգելով անցուցին:

---

## 7

### Նապաստակ և Ոզնի:

Այս պատմութիւնը, տղա՛յք, կարելի է սուտ կըթուի ձեզ, թէև ճշմարիտ է. ըստ որում, մեծ հայրս, որից լսել եմ ես, պատմելու ժամանակ միշտ աւելացնում էր. „Տարակոյս չըկայ ճշմարիտ է այս, ապա թէ ոչ մի մարդ յանձն չէր առնէր պատմելու“: Ահա ինչպէս պատահեցաւ այս բանը:

Մի ամարային առաւօտ հնձոյ ժամանակ,

երբ բրինձը ծաղկած էր, արեգակը փայլում էր երկնակամարի վերայ, թեթև ու քաղցր հողմը շարժում էր ցորենի հասկերը, արտուտները երգում էին, մեղուները բզզում էին, մարդիկ հանդիսական շորերով դնում էին եկեղեցի և համօրէն երկրային արարած ուրախութեան մէջ էր, Ողնին ևս դուրս էր եկած հաղորդակից լինելու ընդհանուր ուրախութեան:

Բայց նա կանգնած դրան առաջև՝ թաթերը ծալած նայում էր իր չորս կողմը և երգում էր մի երգ, որ այլ ողնիների, սովորաբար կիւրակէ առաւօտեանները երգածներից վատ չէր: Նորա կիսաձայն երգելու ժամանակ ծնաւ գլխումը բաւականին համարձակ միտք (կինը այդ միջոցին լուացք էր անում և հագուեցնում էր երեխայքը), մի քայլ անել մարգագետնի վերայ և տեսանել թէ լա՞ւ է արդեօք բուսանում շողգամը:

Շողգամը բուսանում էր ողնու բնակարանի շրջակայքում, ուստի նա նայում էր նորա վերայ, իբրև իր սեպհականութեան և սովորաբար կերակուրի տեղ էր գործ ածում: Ասածը կատարած է: Ողնին փակեց դուռը իր քամակից և գնաց:

Ողին կարողացել էր մի .քանի .քայլ անել և մօտենալ փոքրիկ թուփին, որ բուսանում էր շողգամի չորս կողմով, մին-էլ տեսնես պատահեցաւ Նապաստակին, — որ դուրս էր ելել տանից նոյնպիսի դիտաւորութեամբ՝ տեսնել ինչպէս է բուսանում կաղամբը։ Երբ ողնին տեսաւ Նապաստակին, բարեկամաբար ողջոյն տուաւ բարի առաւօտ ցանկալով նորան։

Բայց Նապաստակը, որ իւր կարծի.քով երևելի ոմն էր և բայց ի դորանից ի բնէ հպարտ, ողջունին ողջոյն չըտուաւ, այլ ծաղրածութեամբ ասաց նորան. „Այդ ինչպէս պատահեցաւ, որ դու վազվզում ես դաշտերում այսպիսի դեղեցիկ առաւօտ։

— Գնում եմ ճեմելու, պատասխանեց ողնին։

— «Ճեմելո՞ւ», — կրկնեց Նապաստակը բարձրաձայն ծիծաղելով, «կարծեմ՝ դորա համար ուրիշ ոտեր են հարկաւոր .քեզ»։

Այս պատասխանը խիստ անհաճոյ թուեցաւ Ողնուն։ Նա երբէ.ք չէր բարկանում, եթէ ոտերի վերայ չըծիծաղէին, բայց երբ բանը վերաբերվում էր նորա ոտերին, որոնք ծննդից ծուռ էին, այն ժամանակ Աստուած մի՛ արասցէ, նա ի՛նչ արածը չէր իմանում։

— Դո՞ւ կարծեմ երևակայում ես, պա-տասխանեց նա Նապաստակին, որ քո ոտե-րը խիստ լա՞վ են։

— «Յույս ունեմ», պատասխանեց Նա-պաստակը։

— Սպասիր, դեռ այդ յայտնի չէ, նկա-տեց Ոզնին։ Ես պատրաստ եմ քո հետ վիճել, որ կը յառաջեմ քեզ, եթէ միասին վազենք։

— „Դու՞, քո ծուռ ոտերո՞վ, ծաղր ես անում ի՞նչ է»․ ասաց Նապաստակը։ „Սակայն շատ բարի, ես պատրաստ եմ վազել, եթէ դու այդքան ցանկանում ես։ Ուրեմն ի՞նչ լինի գրաւը“։

— Մի՛ դրուան ոսկի և մի շիշ օղի, պա-տասխան տուաւ Ոզնին։

— „Համաձայն եմ, թող այդպէս լի-նի“, ասաց Նապաստակը։ „Մենք այս րո-պէին կըսկսենք“։

— Ո՛չ, շտապելու բան չըկայ, պատաս-խանեց Ոզնին։ Ես դեռ առաւօտուց մինչև այժմ ոչ ինչ չեմ կերել, առաջ գնամ տուն և մի բան ուտեմ, յետոյ կէս ժամից պատ-րաստ եմ ուրախութեամբ։

Սոքա համաձայնում են և գնում են։ Ճանապարհին Ոզնին ասում է ինքնիրեն,

„Նապաստակը յոյս ունի իւր երկայն ոտերի վերայ, բայց ես նորա հետ մի խաղ կըխաղամ. Թէպէտ և շատ պարծենում է, բայց իսկապէս, յիմարներից յիմարն է. ուստի կըվճարէ և շատ կըդղջայ վերջը դորա համար“: Երբ Ոզնին տուն եկաւ, ասաց իւր կնոջ. „Կի՛ն, հագնուիր շուտ, գնանք դաշտ ինձ հետ“, „Ի՞նչու համար, ի՞նչ կայ այն տեղ“, հարցրեց կինը:

— Ահա ի՞նչ կայ. մենք Նապաստակի հետ պիտի վազենք դաշտումը. ով մեղանից առաջ եղանէ՝ նա ստանալու է յետ մնացողից մի գրուան ոսկի և մի շիշ օղի, ուստի և դու պարտական ես ինձ օգնել:

— Ո՜հ, դու Աստուած իմ. բացադանչեց Ոզնուհին, խելքդ վերա՞դ է արդեօք, թէ ցնորվել ես։ Ինչպէ՞ս կարող ես դու վիճել Նապաստակի հետ:

— „Լռի՛ր, կին“, պատասխանեց Ոզնին, այդ իմ գործն է: Արագ շարժվի՛ր, հագնուիր շուտ և ի չու“:

Ի՞նչ էր մնում անել Ոզնուհուն, կամիս չըկամիս պէտք է հնազանդիս:

Երբ որ տնից ելան, Ոզնին ասաց իւր կնոջ, „Լաւ լսի՛ր ինչ ես քեզ կ՚ասեմ: Մեր վազելու տեղը այս մշակած դաշտն է:

Նապաստակը կըփախչէ մի ակօսի մէջից, իսկ մենք միւսի: Քո պարտականութիւնը ուրիշ բան չէ, բայց եթէ թաքչել ակօսի մէջ. և երբ Նապաստակը վազելով կըգայ քո մօտ, յանկարծակի դուրս ելանել նորա առաջ աղաղակելով՝ „Ահա ես":

Այս միջոցին նոցա ճանապարհորդութիւնը վերջացաւ. Ողնին ցոյց տուաւ կնոջ տեղը, ուր նա թաքչելու էր, իսկ ինքը գնաց դաշտի միւս ծայրը: Այնտեղ նա գըտաւ Նապաստակին, որ ասաց նորան. „Ի՞նչ է, վազելո՞ւ ենք„: — «Ի հարկէ», պատասխանեց Ողնին:

— Ուրեմն սկսենք:

Եւ իւրաքանչիւրը նոցանից կանգնեցաւ իւր ակօսի մօտ: Նապաստակը ասաց. „Մի, երկու, երեք", և կայծակի պէս սլացաւ քամակը չընայած: Ողնին հազիւ երեք քայլ արել էր, կըպաւ գետնին ու այնպէս մնաց:

Երբ Նապաստակը մեծ մեծ ոստոստելով հասաւ դաշտի ծայրը, Ողնուհին դուրս ելաւ նորա առաջ կանչելով. „Ահա՛ ես". Նապաստակը զարմացաւ: Նա կարծում էր, որ ճշմարիտ իւր առաջ Ողնին էր կանգնած, ըստ որում, կինը շատ նման էր իւր ամուսնոյն:

Նապաստակը մրթմրթաց, „Այս տեղ անմաքուր զօրութիւն կայ", և յետոյ աւելացրեց բարձր ձայնով, „Մի անգամ՝ ևս":

Եւ վազեց նա մի անգամ ևս փոթորիկի նման, այնպէս, որ միայն նորա ականջները երևում՝ էին, իսկ Ոզնուհին տեղից չշարժուեց: Երբ Նապաստակը հասաւ միւս ծայրը, Ոզնին դուրս եկաւ նորա առաջ և կանչեց. „Ահա ես". Նապաստակը այլայլած պատասխանեց. „Վազենք նորից":

— Շատ բարի, պատասխանեց Ոզնին, ես պատրաստ եմ՝ հարիւր անգամ ևս վազել, եթէ կամիս:

Այսպէս Նապաստակը եօթանասուն երեք անգամ՝ վազեց անդադար դաշտի մի ծայրից միւս ծայրը և Ոզնին միշտ յաղթող մնաց: Այն ինչ Նապաստակը հասնում՝ էր դաշտի ծայրը, Ոզնին կամ՝ Ոզնուհին դուրս էին գալիս նորա առաջ և կանչում՝ էին. „Ահա ես": Իսկ եօթանասուն չորրորդ անգամին Նապաստակը չըկարողացաւ տանել և ոտքերը տարածեց դաշտի մէջ: Արիւնը վազեց նորա կոկորդից և նա այն տեղ իսկ փչեց հոգին: Ոզնին առաւ ձեռք բերած ոսկին ու մի շիշ օղին, կանչեց կնոջ և ուրախ ուրախ վերադարձաւ նորա հետ իւր տունը. եթէ նոքա

մինչև այժմ չեն մեռած, ուրեմն այժմ ևս կենդանի են:

Ահա այսպէս խաբեց Ողնին Նապաստակին, և այնպէս շինեց իւր բանը, որ նա վտանգաւորութենից ընկաւ մեռաւ. ու այնուհետև ոչ մի նապաստակ ձայնատու չէր լինում՝ վազելու:

Այս պատմութեան բարոյականութիւնը նախ և առաջ այն է, որ մի մարդ որքան և համարէր իւր անձը երևելի, չըպէտք է ծիծաղի ուրիշի վերայ, թող նա լինի ողնի. երկրորդ՝ եթէ դուք կըկամենաք ամուսնանալ, վատ չի լինէր, եթէ ընտրէք այդ կինը ձեր ազգի միջից ամեն բանով ձեզ նման: Ուստի եթէ դուք ողնի էք, աշխատեցէ՛ք, որ ձեր ամուսինը ևս ողնուհի լինի, և այս ամենայն վիճակի և տեսակի համար:

---

## 8

## Արջ և Ցախաւարէկ:

Մի օր արջը և դայլը ձեմում էին անտառում: Արջը լսեց թռչունի երգեցողութիւն: „Եղբայր գայլ, հարցրեց նա, ո՞վ է այդ գեղեցիկ երգիչը“:

— «Այդ թռչունների թագաւորն է, պատասխանեց գայլը, պէտք է նորա ողջունել»։

Իսկապէս դա ցախսարեկն էր (*)։ „Եթէ այդպէս է, ասաց արջը, Նորին Մեծութիւնը պարտական է ունենալ պալատ, ցոյց տուր ինձ"։

— Այդ այդպէս հեշտ չէ, ինչպէս որ դու կարծում ես, ասաց գայլը, հարկաւոր է սպասել թագուհու գալստեան։

Թագուհին եկաւ այդ միջոցին. նա և թագաւորը բերել էին կտուցքով փոքրիկ որդեր իւրեանց ձագերը կերակրելու համար։

Արջը ուրախութեամբ կ'երթար նոցա ետևից, բայց գայլը բռնեց նորան ասելով. „Ո՛չ, սպասենք նոցա դուրս գալուն"։ Նոքա նկատեցին միայն բունի տեղը և շարունակեցին իւրեանց ճանապարհը։

Սակայն, արջը չըհանդարտուեցաւ մինչև որ չըտեսաւ թռչունների թագաւորի պալատը, ուր և շուտով վերադարձաւ։ Թագաւորը և թագուհին այն տեղ չէին, նա նայեցաւ բունի մէջ և տեսաւ հինգ վեց հատ ննջած ձագեր։ „Մի՞թէ այս է պա-

(*) Roitelet.

լեառը, բացագանչեց նա. սա շատ տխուր պալատ է, իսկ դուք՝ Թագաւորի որդիք չէք, այլ անշուք և այլանդակ ստեղծա-ւածք:

Փոքրիկ Ցախսարեկները շատ բարկացան լսելով այդ, և սկսան աղաղակել: „Ո՛չ, արջ. մենք այն տեսակներից չենք, որ դու կարծում ես, մեր ծնողքը ազնուական են; դու շատ կըզղջաս այդ անիրաւութեան համար“: Այս սպառնալիքից արջը և գայլը երկիւղ կրելով՝ փախան իւրեանց որջերը. բայց փոքրիկ ձագերը շարունակում էին աղաղակել և ճիչ բարձրացնել. նոքա ասա-ցին իւրեանց ծնողքին, որոնք նոցա համար կերակուր էին բերել: «Արջը եկաւ մեզ վիրաւորեց, մենք տեղերիցս չենք շարժել և ոչ մի փշրանք բերաններս չենք դնել, մին-չև որ մեր պատիւը չըպահանջես»:

— Մի՛ անհանգստացէ՛ք, ասաց նոցա Թագաւորը, ձեր պատիւը ոտնակոխ չի լի-նիլ: Եւ Թագուհու հետ թռչելով մինչև արջի որջը, կանչեց. «Պառաւ արջ, ի՞նչ իրա-ւունքով վիրաւորել ես իմ զաւակներս. դորա համար դու պատասխանատու կըլի-նես, ըստ որում, մենք քո հետ արիւնա-հեղ պատերազմ կըբանանք»:

Պատերազմը յայտնուեցաւ. Արջը կանչեց իւր օգնութիւն չորքոտանիներու գունդը. եզը, կովը, էշը, այծեամը, այծը և բոլոր նոցա նմանները. Իւր կողմից ցախսարեկը կանչեց բոլոր օդաթափիկները, ոչ միայն մեծ և փոքր թռչունները, այլ և թեւաւոր միջատները, այսինքն ճանճեր, մժեղներ մեղուներ և պիծակներ: Որովհետև պատերազմի օրը մօտանում էր, ցախսարեկը ուղարկեց լրտեսներ իմանալու, թէ ով պէտք է լինէր թշնամու զօրագլուխը:

Մժղուկը, որ բոլորից փոքրագոյն էր, թռաւ դէպի անտառի այն կողմը, ուր որ թշնամիք հաւաքուելու էին, և պահուեցաւ մի ծառի տերևի տակ, որի մօտ խորհրդածութիւն պիտի անէին: Արջը կանչեց աղուեսին և ասաց.

— Կնքահայր, դու բոլոր կենդանիներից խորամանկն ես. դու կը լինես մեր զօրագլուխը:

— Լաւ, ասաց աղուէսը, բայց ինչ պայմանական նշան ընդունենք: Ամենքեան լուռ մնացին: Էհ, լաւ, շարունակեց նա, ես ունեմ գեղեցիկ, երկայն, փետուրի պէս թաւամազ տուտ. քանի որ ես տուտս վեր բռնեմ, կը նշանակէ բանը յաջողակ է գը-

նում և դուք առաջ եկէք. բայց երբ որ ես ցածացնեմ, այդ կը լինի նշանացի ձեզ փախչելու և ազատուելու:

Մժղուկը, որ լաւ լսեց այս, վերադարձաւ և մանրամասնաբար պատմեց Ցախսարեկին:

Արշալոյսը բացուածին պէս, չորքոտանիք վազեցին պատերազմի դաշտը այնպիսի սաստիկ դոփիւնքով, որ գետինը շարժում էր: Ցախսարեկը երևեցաւ օդի մէջ իւր զօրքով, որոնք բզզում էին, ճչում էին և այնպէս թռթռում էին, որ մարդ կը ցնորվէր նայելով նոցա վերայ:

— Կատաղութեամբ յարձակուեցան միմեանց վերայ: Բայց Ցախսարեկը շտապով հրամայեց Պիծակին գնալ աղուէսի տուտի տակ կպչել և խայթել ամենայն զօրութեամբ: Խայթոցի առաջի հարուածից, աղուէսը վեր ցատկեցաւ, բայց տուտը դէպի վեր բռնած. երկրորդ հարուածին, նա պարտաւորուեցաւ մի վայրկեան ցածացնել, իսկ երրորդ անգամին նա չըկարողացաւ համբերել ու սեղմեց տուտը իւր ոտերի մէջ աղիողորմ ձայն բարձրացնելով:

Չորքոտանիք, տեսնելով այդ, կարծեցին որ ամենայն ինչ կորած է, և սկսեցին փա-

գէլ ամենքեան իւրեանց ծակերը և այսպէս թռչունները յաղթող հանդիսացան։

Թագաւորը և թագուհին թռան իւրեանց բունը կանչելով. „Յաղթեցինք, յաղթեցինք երեխայք, կերէք և խմեցէք ուրախութեամբ։

Ո՛չ, պատասխանեցին երեխայքը, պէտք է որ արջը ինքը գայ ներողութիւն խնդրէ և ճանաչէ մեր ազնուականութիւնը։

Ցախսարեկը թռաւ արջի որջը և ասաց նորան. Արջ եղբա՛յր, դու պէտք է գաս մեր բունը և թողութիւն խնդրես իմ՝ երեխաներից և յայտնես որ դու ընդունում՝ ես նոցա ազնուականութիւնը. ապա թէ ո՛չ, զգոյշ եղիր կողքերիդ մասին։ Արջը վախեցած, սողոսկելով եկաւ բունը և խնդրեց թողութիւն։ Այնուհետև ձագերը վերջապէս հանդստացան և բոլոր երեկոյ ուրախութեան ու զուարճութեան մէջ անցուցին։

ՎԵՐՋ․

## ՑԱՆԿ.





ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ԱԶԳԱՅԻՆ

# ԱՌԱԿՆԵՐ

ԵՂԲԱՐՑ ԳՐԻՄՄԱՑ ԱՇԽԱՏՈՒԹԵԱՄԲ ՀԱՒԱՔՈՒԱԾ.

—

Թարգմանութիւն Ֆրանսիականէն

Ե—այէ Տէր Գրիգորեանց։

ՏԵՏՐԱԿ Բ.



Ս. ՊԵՏԵՐԲՈՒՐԳ.
1864

# ՅԱՆԿ.

# ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ԱԶԳԱՅԻՆ

# ԱՌԱԿՆԵՐ.

—

## 1

### ՌԱՄԻԿԸ ԵՐԿՆՔՈՒՄԸ.

Մի օր մեռաւ մի խեղճ բարեսիրտ ռամիկ և եկաւ Գրախտի դուռը։ Մի և նոյն ժամանակ մեռել էր մի հարուստ մեծատուն, որ նոյնպէս վերացել էր երկինք։ Սուրբ Պետրոսը եկաւ իւր բանալիներով, բացեց դուռը ու մտցրաւ մեծատունին. բայց անտարակոյս, նա չտեսաւ Ռամիկին, ըստ որում նորան դուրս թողաւ ու փակեց դուռը։ Ռամիկը լսեց ուրախութեան ընդունելութիւնը, որ երկինքը երգերով և երաժշտութեամբ անում էր հարուստին։ Երբ ձայ-

ները դադարեցան, սուրբ Պետրոսը վերադարձաւ և մտցրաւ վերջապէս Ռամիկին: Սա սպասում էր, որ իւր մտցնելիս՝ երգեցողութիւնը ու երաժշտութիւնը նորից սկսի: Սակայն, ո՛չ մի ձայն չլսուեցաւ: Նորան ընդունեցին բաց սրտով, բայց մի ոչ հանդէս չեղաւ և ոչ ոք չի երգեց: Ռամիկը հարցրեց սուրբ Պետրոսին թէ ինչո՞ւ համար երաժշտութիւն չեղաւ նորա համար էլ, ինչպէս որ հարուստին, և թէ կողմնապահութիւնը թագաւորում է երկնքումն էլ: Ո՛չ, պատասխանեց Սուրբը. դու մեզ համար ուրիշներից պակաս չես, և այս մըտնողից էլ սակաւ չես վայելեր դրախտի երջանկութիւնը, բայց արի տես, որ քեզ նման խեղճ ռամիկներ մտնում են այս տեղ ամեն օր, այն ինչ հարիւր տարին մի անգամ հազիւ թէ մի հարուստ մտնէ:

2

## ՍՊԻՏԱԿ ՁԻՒՆ ԵՒ ԿԱՐՄԻՐ ՎԱՐԴ.

Մի աղքատ այրի կին բնակվում էր առանձին խրճիթի մէջ, որի դրան առաջ կար պարտէզ երկու վարդի ծառով, որից մինը բերում էր սպիտակ, միւսը կարմիր վարդ։ Այս այրի կինը ունէր երկու աղջիկ, շատ նման այդ երկու վարդի ծառերին։ Մինի անունը Սպիտակ Ձիւն էր, միւսինը Կարմիր Վարդ։ Այս երկու երեխայքը խիստ բարեպաշտ, հնազանդ և աշխատասէր էին. բայց Սպիտակ Ձիւնը աւելի խաղաղ ու քաղցրը բնաւորութեան տէր էր. իսկ Կարմիր Վարդը սիրում էր վազվզել կանաչի և դաշտի վրայ, ծաղիկներ ու թիթեռներ փնտռել։ Սպիտակ Ձիւնը մնում էր տունը իւր մօր հետ, օգնում էր նրա տնական գործերին, և երբ գործերը վերջանում էին, կարդում էր նրա համար մի բան։ Երկու քոյր այնքան սիրով էին մէկ մէկու հետ, որ միշտ ձեռք ձեռքի բռնած միասին դուրս էին գալիս. և երբ Սպիտակ Ձիւնը ասում էր. „Մենք երբէք չենք բաժանվել,“ կարմիր

Վարդը պատասխանում էր ,,Մինչև մեր մահը.“ իսկ մայրը աւելացնում էր ,,Ամենայն ինչ ձեր մէջ պէտք է լինի հասարակաց:“

Նոքա յաճախ գնում էին միայնակ անտառ վայրենի պտուղներ հաւաքելու համար: կենդանիք մեծարում ու աներկիւղաբար մօտանում էին նոցա. նապաստակը ուտում էր ձեռքերից, այծեամը արածում էր ոտքերի տակ, եղջերուն խաղում էր նոցա առջև, և թռչունները, ծառերի ճիւղերի վրայ թառած, երգում էին իրանց գեղեցիկ երգերը: Երբէք ո՛չ մի ձախորդութիւն չէր պատահում նոցա. եթէ գիշերը վրահասնէր անտառում, նոքա գրկախառնուած պառկում էին մամուռի վրայ և քուն էին լինում մինչև միւս առաւօտ, առանց մի անհանգստութիւն պատճառելու իրանց մօրը: Մի անգամ, երբ նոքա գիշերը անցուցին անտառում, արշալոյսը բացուածին պէս զարթելով, տեսան իրանց առաջ մի գեղեցիկ, սպիտակ փայլուն շոր հագած երեխայ, որ ձգելով նոցա վրայ բարեկամական հայեացք, իսկոյն առանց մի խօսք ասելու աներևոյթ եղաւ անտառումը: Այդ միջոցին նոքա նըկատեցին անդունդը, որի ափին նստել էին և որի մէջ անպատճառ կ՚գլորվէին, եթէ էլ

մի երկու քայլ անէին այդ խաւարումը: Նոցա մայրը ասաց, որ այդ երեխան, անշուշտ, բարեսիրտ աղջկանց պահապան հը-րեշտակը պէտք է լինի: Սպիտակ Ձիւնը և կարմիր Վարդը այնպէս յստակ էին պահում իրանց մօր խրճիթը, որ հայելու պէս կարելի էր նրա մէջը նայել: Ամառը կարմիր Վարդը պարապում էր տան գործերով և ամեն առաւօտ վերկենալու ժամանակ, մայրը գտնում էր մի ծաղկեայ փունջ, որի մէջ լինում էր երկու տեսակ վարդ, սպիտակ ու կարմիր: Ձմեռը, Սպիտակ Ձիւնը վառում էր կրակ, կախում էր կարթից արոյրէ պոյտը, որ գեղեցիկ մաքրած ոսկու պէս փայլում էր: Երեկոյին երբ ձիւն էր գալիս, մայրը ասումէր. „Սպիտակ Ձիւն, գնա՛ դուռը փակի՛ր.“ յետոյ նստում էին կրակի առաջ. մայրը դնում էր ակնոցները աչքին և կարդում էր մի մեծ գիրք. իսկ երկու փոքրիկները լսում էին նրան մանելով իրանց աղեկատը: Մի ուլիկ միշտ պառկում էր նոցա ոտերի տակ, իսկ նոցա յետեւը մի տատրակ գլուխը թևերի տակ առած ննջում էր ծառի վրայ: Մի երեկոյ, երբ միասին ժողոված էին, յանկարծ դուռը բաղխեցին: „Կարմիր Վարդ, ասաց մայրը, գնա՛ շուտով դուռը

բաց. անտարակոյս, մի մոլորուած ճանապարհորդ փնտռում է գիշերուայ ապաստանարան։ Երբ կարմիր Վարդը գնաց քաշեց պարզունակը, յուսալով ներս ընդունել մի աղքատ մարդ, յանկարծ կիսաբաց դռից մի արջ մտցրաւ իր մեծ սեւ կնճիթը։ Կարմիր Վարդը փախաւ կանչելով, ուլիկը սկսեց բառաչել, աղաւնին թռթռալ տան մի անկիւնից միւսը, Սպիտակ Ձիւնը սրտադող պահվեցաւ իր մօր մահճակալի յետեւը. բայց արջը ասաց նոցա. „Մի՛ վախէք ինձանից, ես ձեզ վատութիւն չեմ անիլ. խնդրումեմ միայն հրաման փոքր ինչ տաքանալու, ինչու որ կիսով չափ սառած եմ“։

— Մօտացի՛ր կրակին, խեղճ արջ, պատասխանեց մայրը, միայն զգոյշ եղիր, որ մորթիդ չայրես։ Յետոյ շարունակեց. „Սպիտակ Ձիւն, կարմիր Վարդ, վերադարձէ՛ք այս տեղ, արջը ձեզ վնաս չի տալ, նրա միտքը չար չէ։“ Երկուքն էլ վերադարձան, վերջը ուլիկը ու տատրակը, կամաց կամաց մոռանալով իրանց վախը, նոյնպէս մօտացան։

Արջը ասաց. „Տղա՛յք, թափեցէք փոքր ինչ կռնակիս ձիւնը։“

Նոքա առին աւել և յստակեցին բոլոր

մորթին. այդ գործողութիւնից յետոյ, մի-ջը պառկեցաւ կրակի առաջ ուրախ ուրախ պոռոտալով:

Երեխայքը շուտով հանդստացան ու սկսան խաղալ այս անակնկալ հիւրի հետ: Նորա քաշումէին մորթուց, նստումէին կրանակի վրայ, թաւալումէին սենեակի մէջ ու մորակով կամացուկ զարնումէին. և երբ նա սկսումէր պոռոտալ, նոքա բարձրաձայն ծիծաղումէին: Արջը չէր յանդիմանում նո-ցա, միայն երբ խաղը չափից դուրս էր գա-լիս, նա ասումէր. „Թողէք ինձ ապրել, մի՛ սպանէք ձեր հիւրը:“ Երբ պառկելու ժա-մանակը եկաւ, մայրը ասաց նրա. „Մնացի՛ր այս տեղ, անցրու գիշերը կրակի առաջ. գոնէ դու կ'պատսպարվես այս տեղ ցրտից և անբարեխառն եղանակից:“

Երշալոյս երեւցածին պէս, փոքրիկ աղ-ջիկները բացին դուռը և նա գնաց անտառ մեծ մեծ քայլեր անելով: Այն օրից սկսած նա վերադառնումէր ամեն երեկոյ մի և նոյն ժամին, պառկումէր կրակի առաջ և տղայքը խաղումէին նրա հետ, որքան որ կամենու-մէին: Նրան այնպէս ընդելացել էին, որ դուռը անգամ չէին փակում մինչև նրա գալը:

Երբ աշունը եկաւ ու բոլոր շրջակայքը կանանչացան, մի առաւօտ արջը ասաց Սպիտակ Ձիւնին „Ես կ'երթամ ու մինչև չեմ վերադառնալ ամառը:

— Ո՞ւր ես գնում, սիրելի արջ, հարցրեց Սպիտակ Ձիւնը:

„Ես գնումեմ անտառ չար թզուկներից գանձերս պահպանելու. ձմեռը, երբ երկիրը սառած է, նոքա ստիպուած են մնալ իրանց ծակերում, չկարողանալով ճանապարհ բանալ, բայց այժմ երբ արեգակը տաքացրեց գետինը, նոքա դուրս են գալիս աւազակութիւն անելու: Ինչ որ մի անգամ մտնումէ նոցա բնակարանը, մինչև այն տեղից դուրս չի կարելի հանել: Սպիտակ Ձիւնը շատ տխրեցաւ արջի գնալուն. երբ որ դուռը բացեց, արջը դռնափակին դպչելով քերթեց մորթին և աղջիկը նկատեց որ նրա կաշին ոսկու պէս փայլուն էր, բայց տակաւին չէր հաւատի այդ մասին: Արջը շուտ շուտ գնաց ու անհետացաւ ծառերի քամակը:

Մի փոքրից յետոյ, մայրը ուղարկեց իր աղջիկները անտառ չոր ծառեր հաւաքելու համար. դոքա տեսան մեծ կտրած ծառ և մի ուրիշ բան, որ շարժվումէր այս կողմ այն կողմը կանաչի մէջ, սակայն չկարողացան

*որոշել թէ ինչ էր այդ բանը: Մօտենալով նկատեցին փոքրիկ ծերացած Թզուկ կնճռած երեսով և մի կանգուն սպիտակ մօրուքով: Մօրուքը մնացել էր ծառի ճեղքի մէջ և Թզուկը, իբր մի խաղացող շնիկ, վեր վեր էր թռչկոտում չկարողանալով ազատել: Ուղղելով իր կրակոտ հայեացքը փոքրիկների վրայ, կանչեց. «Ի՞նչ այդ տեղ փայտի պէս կանգնել էք, փոխանակ ինձ օգնութիւն տալու:*

*— Խե՞ղճ, ինչպէս պատահեցաւ որ ընկար այդ թակարդը: «Յիմա՛ր հարցասէրներ, ասաց Թզուկը, ես ուզեցի ճեղքել այս ծառը խոհանոցիս համար ճղներ *) պատրաստելու, պատճառ, մեր ամանները շատ քնքոյշ են ու մեծ փայտերի չեն դիմանալ, իսկոյն կ'այրվեն: Մենք ձեր որկրամոլ կոպիտ ցեղի պէս չենք լափում ճաշը մեծ մեծ պատառներով: Ես մօտացրի սեպը ծառին, բայց այդ անիծեալ սեպը այնպէս լպրծուն էր, որ դուրս թռաւ այն րոպէին, երբ տակաւին չէի սպասում, և ճեղքը այնպէս շուտով փակուեցաւ որ ես չհասայ հանելու իմ փառաւոր սպիտակ մօրուքս ճեղքից. այժմ*

---

*) Щепки.

ահա՛ մնացել է այս տեղ, չգիտեմ ի՞նչպէս հանել։ Հապա, ինչո՞ւ կանգնած ծիծաղում էք, ի՞նչ կայ, ի՞նչ ականջներդ կախած նայում էք։

Երեխայքը որքան չաշխատեցին, չկարողացան ազատել մօրուքը, որը կարծես թէ մամուլի տակ էր ճնշվել։

„Ես կ՚վազեմ մարդիկ բերելու,“ ասաց կարմիր Վարդը։

— Մարդիկ բերե՞լ, բացագանչեց Թզուկը կերկերած ձայնով. դուք երկուքդ բաւական չէք մի՞թէ, աւանակնե՛ր։

— Փոքր ինչ համբերութիւն ունեցէք, մենք կ՚ազատենք ձեզ, ասաց Սպիտակ Ձիւնը և հանելով գրպանից իր փոքրիկ մկրատը, կտրեց մօրուքի ծայրը։ Թզուկը ազատուելուց յետոյ, իսկոյն գնաց առաւ լի ոսկով պարկը, որ պահած էր ծառի արմատի մէջ և մռմռալով ասաց. „կոպի՛տ արարածք, ա՜յսպէս կտրել իմ փառաւոր մօրուքիս ծայրը, թո՛ղ սատանան ձեզ հատուցումն տայ։“ Յետոյ նա դրաւ պարկը իր կռնակի վրայ և չնայած վրանները, հեռացաւ նրանցից։ Մի քանի ամիս անցած երկու քոյր գնացին մի օր ճաշի համար ձուկ որսալու։ Մօտենալով գետին, տեսան մի տեսակ մեծ մարախ, որ ոստոստում էր ջրի ափին, ասես թէ ջու-

րը նետուելու դիտաւորութեամբ։ Նոքա վազեցին և ճանաչեցին Թզուկը։ „Ի՞նչ ես անում, ասաց կարմիր Վարդը, ուզո՞ւմես ջուրը ընկնել։“

— Այնքան յիմար չեմ, բացագանչեց Թզուկը, չե՞ս տեսնում այս անիծած ձուկը քարշումէ ինձ։

Թզուկը նոյնպէս եկել էր ձուկ բռնելու ու ձգել էր կարթը. բայց դժբաղդաբար քամին խառնել էր նրա մօրուքը թելի հետ։ Մի քանի րոպէից մեծ ձուկ կծել էր կերը և, լինելով աւելի ուժեղ, քարշում էր տըկար ստեղծուածը դէպի իր կողմը։ Որքան չաշխատեց խեղճ Թզուկը բռնվել գետափի մացառներից ու կանանչներից, չկարողացաւ ազատվել ձուկից, և անպատճառ կ’գլորվէր ջուրը, եթէ դրսից օգնութիւն չստանար։ Աղջիկները հասան ժամանակին և փորձեցին մօրուքը արձակել, բայց իզուր, ըստ որում սաստիկ խառնված էր թելի հետ. դարձեալ հարկաւոր եղաւ մկրատին դառնալ ու նրանով կտրել մօրուքի մի մասը։ Այն ինչ Թզուկը նկատեց այդ, բարկանալով գանչեց. „Ինչ սովորութիւն է եղել անմի՛տք, ապականել մարդու երեսը. բաւական չէ՞ր որ առաջի անգամ կարճացրաք մօրուքս, այժմ

էլ կտրեցիք կէսը․ ի՞նչպէս երեւիմ այսուհետեւ եղբայրակիցներուս աչքին: „Եւ տանելով պահած մարգարիտով պարկը, տարաւ հետը առանց մի խօսք ասելու, և անհետացաւ իսկոյն քարի քամակումը:

Մի քանի ժամանակ անցնելուց յետոյ, մայրը ուղարկեց իր աղջիկները քաղաք դերձան, ասեղ և ժապաւէն գնելու համար: Նոցա հարկաւոր էր անցնել ապառաժուտ դաշտավայրից, ուր մի մեծ թռչուն բաւական ժամանակ թռթռալով օդի մէջ, կամաց կամաց ցած իջաւ և յանկարծ յարձակուեցաւ հողի վրայ: Այդ րոպէին լսուեցաւ սուր և աղիողորմ ձայն: Նոքա վազեցին ու մեծ երկիւղով տեսան մի արծիւ, որ բռնել էր ճանկերի մէջ նոցա հին բարեկամ Թզուկը և կամենումէր երկինք բարձրացնել: Երեխայքը իրանց բարեհոգի բնաւորութեամբ, կարողացածներին չափ քաշեցին Թզուկը և այնպէս լաւ պատերազմեցան արծուի հետ, որ նա ստիպուեցաւ թողնել իր աւարը ու փախչել․ բայց երբ Թզուկի վախը փոքր ինչ ցրուեցաւ, նա աղաղակեց իր խռպոտ ձայնով․ „Չէ՞իք կարող աւելի քաղաքավարի լինել դուք ինձ հետ, այնպէս քաշեցիք խեղճ շորիցս, որ այժմ պատառ

պատառ եղաւ, յիմար աւանակնե՛ր:« Յետոյ, առնելով իր թանկագին քարերով լցրած պարկը, գնաց մտաւ իր ծակը ժայռերի մէջ: Փոքրիկները սովորելով նրա ապերախտութեան, ընկան ճանապարհ և գնացին քաղաք իրանց գնելիքները վերջացնելու համար:

Նոյն տեղով վերադառնալու ժամանակ, վրայ հասան Թզուկին, որ դատարկել էր իր առաջ թանկագին քարերով պարկը, կարծելով որ ոչ ոք կարող չէ անցնել այսպէս ուշ այնտեղից: Մայր մտնող արևը փայլեցնում էր քարեղէնները, որոնք այնպէս զարմանալի գոյներ էին արձակում, որ փոքրիկները անշարժ մնացին նայելով նրանց վրայ: „Ինչո՞ւ բերանբաց կանգնել էք այդտեղ,“ ասաց նոցա Թզուկը, և նրա սովորական թուխ երեսը միանգամայն կարմրեցաւ բարկութիւնից: Նա յիշոցները շարունակելու վրայ էր, մինչ տեսնես լսուեցաւ մի սարսափելի մռմռոց և մի սև արջ դուրս եկաւ անտառից: Թզուկը լեղապատառ ուզեց փախչել, բայց ժամանակ չունեցաւ հասնելու իր ծակը. արջը կտրեց նրա ճանապարհը: Այդ միջոցին Թզուկը սկսաւ աղաղակել յուսահատ ձայնով. „Սի-

րելի տէր արջ, խնայի՛ր ինձ, ես քեզ կը-տամ՝ բոլոր իմ գանձը, այս զարդերը, որ դու տեսնումես առջեւդ, պարգեւի՛ր միայն ինձ կեանք. Ինչ օգուտ քեզ ինձ պէս Թըզուկին մեռցնելուց, դու ինձ քո ատամնե-րի տակ չես զգալ անգամ: Ա՛ռ, լա՛ւ է, այս երկու անխիծած փոքր աղջիկները, որ երկու լաւ պատառներ են լորամարգի պէս պարարտ. կե՛ր տուր նոցա ի սէր Աստու-ծոյ:“ Բայց արջը չըլսելով նրան, այնպէս սաստիկ հարուած տուաւ իր թաթով այս չարասիրտ արարածին, որ նա նոյն րոպէին փռվեցաւ անկենդան գետնի վրայ:

Փոքրիկները ահուդողի մէջ էին ընկել, բայց արջը գանչեց, „Սպիտակ Ձիւն, կար-միր Վարդ, մի՛ վախէք, սպասէ՛ք ինձ:“

Նոքա կանգնեցան ճանաչելով նրա ձայ-նը. և երբ նա նոցա մօտեցաւ, վրայի ար-ջենին յանկարծ ցած ընկաւ և տեսան նոքա մի սիրուն երիտասարդ ոսկի շոր հագած: „Ես արքայորդի եմ,“ ասաց նոցա, այս անպիտան Թզուկը ինձ, բոլոր գանձս գո-ղանալով, արջի փոխեց և դատապարտեց այս կերպարանքով շրջմոլիկ կեանքի, այն-պէս, որ կարող էի փրկվել միայն նրա մահով, այժմ նա ստացաւ վարձատրու-

թիւն իր չարագործութեան համար։ Սպիտակ Ձիւնը ամուսնացաւ արքայորդու, և կարմիր վարդը նրա եղբօր հետ։ Նոքա բաժանեցին իրանց մէջ մեծ գանձը, որ Թըզուկը հաւաքել էր իր ծակումը։ Պառաւ մայրը ապրեցաւ էլ շատ տարիներ հանգիստ ու երջանիկ իր զաւակաց մօտ. Նա առաւ դրաւ պատուհանի վրայ երկու վարդենիները, որոնք բերումէին ամեն ամառ գեղեցիկ վարդեր, սպիտակ և կարմիր։

---

### 3

### ՊՐԵՄ ՔԱՂԱՔԻ ԵՐԱԺԻՇՏՔԸ.

Մի մարդ ունէր մի էշ, որ ծառայումէր նրան մեծ հաւատարմութեամբ շատ տարիներ. բայց ուժից այնքան ընկած էր, որ օր ըստ օրէ անընդունակ էր լինում աշխատութեան։ Իշապանը մտադիր էր մորթել ու կաշին հանել։ Կենդանին հասկանալով քամին որ կողմից էր փչում, առաւ գլուխը ու ընկաւ ճանապարհ դէպի Պրեմ։ „Այն տեղ, ասումէր նա ինքնիրեն, ես կարող

եմ լինել քաղաքական երաժիշտ։“ Ճանապարհին պատահեցաւ մի որսաշուն, որ կաղկանձումէր, ասես թէ յոգնած լինէր շատ վազելուց։ „Ինչո՞ւ համար այդպէս կաղկանձումես, բա՛րեկամ, հարցրեց էշը։

— Ո՜հ, պատասխանեց շունը, այնոր համար որ ես ծեր եմ, օրէ-օր թուլանումեմ և չեմ կարող որսի ելանել. պարոնս դրա համար ուզումէր ինձ սատկեցնել. իմանալով նրա դիտաւորութիւնը, առի գլուխս ու փախայ դաշտ. բայց ի՞նչպէս մի կտոր հաց ճարեմ ու գլուխս պահեմ։“

— Լա՛ւ, ասաց էշը, ես գնումեմ Պրեմ քաղաքական երաժիշտ լինելու, եկ իմ հետ երաժիշտ եղի՛ր, ես կ՚փչեմ զուռնան, իսկ դու կ՚զարնես ծնծղան։“

Շունը ընդունեց հրաւէրը ու գնաց նրա հետ միասին. փոքր ինչ հեռու, նոքա տեսան մի տխուր երեսով կատու, որ քուն էր լինում. „Ինչո՞ւ այդպէս տխուր պառկած ես, ոլորակ ընչացք,“ ասաց էշը։

„Ուրախ չես լինիր, եթէ գլխիդ ողջութեան մասին երկիւղ ես կրում,“ պատասխանեց կատուն, որովհետև տարիներս անցած ու ատամներս բթացած լինելուն պատճառաւ, ես աւելի լաւ էի համարում

ազմկատը դիմացս մնալ կրակարանի յետևը, քան թէ մուկ բռնել, տիրուհիս կամեցաւ ինձ ջուրը ձգել, ես դէպ ժամով ազատվեցայ, բայց այժմ ի՞նչ անեմ և ուր երթամ:“

— Ե՛կ մեզ հետ Պրեմ, դու լաւ գիտես գիշերային երաժշտութիւն, այն տեղ կ՚ լինես մեզ նման քաղաքական երաժիշտ։—

Կատուին սրտովը լինելով այս առաջարկութիւնը, գնաց նոցա հետ։ Մեր թափառականքը շուտով եկան մի գաւթի առաջ, որի դարպասի վրայ մի աքաղաղ նստած կոկորդն էր ձեղքում: „Դու մեր ականջներն ես խլացնում,“ ասաց էշը. „ինչու համար այդպէս աղաղակումես:“

— Արշալուսի բացուելը իմաց եմ տալիս, ասաց աքաղաղը, պատճառ որ, այսօր Աստուածամայրը լուացել է և այսօր պիտի չորացնէ Յիսուս մանուկի շապիկները. իսկ էգուց որովհետև կիւրակէ է, տիկինս չափազանց անգութ է դէպի իմ անձը. նա ասաց խոհարարին որ այս գիշեր մորթէ ինձ և արգանակ եփէ, որպէս զի էգուցուայ ճաշկերութին հիւրերի հետ միասին լափէ ինձ. ահա՛ ինչու համար վերջին ան-

դամ աղաղակումեմ որքան որ զօրութիւնըս հասնումէ։“

— Շատ բարի, կարմրակատար, ասաց էշը, եկ շուտով մեզ հետ Պրեմ, քեզ համար որ տեղ էլ որ երթաս, մահից լաւ կըլինի. քո գեղեցիկ ձայնովը մեր երաժշտութիւնը շատ ներդաշնակաւոր կ՚լինի։

Այս հրաւէրը հաճոյ եկաւ աքաղաղին, ուստի չորսն էլ միասին ճանապարհ ընկան։ Չկարենալով այն օրը Պրեմ հասնել, մտան մի անտառ մտածելով գիշերը այն տեղ անցնել։ Էշը ու շունը տեղաւորվեցան մի մեծ ծառի տակ, կատուն ելաւ վրան, իսկ աքաղաղը, համարելով ծառի ծայրը աւելի ապահով իրա համար, թռաւ ու նստաւ վրան. քնելուց առաջ, որովհետև աչքը ձգել էր իր չորս կողմը, տեսաւ մի փոքրիկ լոյս և դառնալով դէպի իր ընկերները, գանչեց. „Եղբա՛րք, այս տեղից մօտ պէտք է լինի մի տուն, ըստ որում պատուհանից երևումէ լոյս։“ — „Եթէ ուղիղ է, ասաց էշը, վերկենանք ու շուտով գնանք այն տեղ. այս անխծած պանդոկը շատ անյարմար է պառկելու։“ Շունը յաւելցրեց. „Արդարև չէի հրաժարուիլ եթէ լինէր մի քանի կտոր մսոտ ոսկոր։ Ուղևորվելով

դէպի այն կողմը, որ տեղից երևումէր լոյսը, նոքա նկատեցին որ այդ լոյսը անդադար մեծանում ու սաստկանումէր, և շուտով վերջապէս հասան մի աւազակի լուսաւոր-ված տան առաջև:

Էշը, իբրև ամենից մեծը, մօտեցաւ պատուհանին և նայեցաւ սենեակի մէջ. „Ի՞նչ կայ այդ տեղ, ա՛լևոր, հարցրեց նորան աքաղաղը:“

— Ի՞նչ կայ, պատասխանեց էշը, մի սեղան վրան ուտելիք խմելիք դարսած և աւազակներով շրջապատած, որոնք ուրախ ուրախ ուտում և խմում են:“

— Մեր բերանից հեռու, ասաց աքաղաղը:

— Ի հարկէ, կրկնեց էշը, վատ չէր լինէր, եթէ լինէինք այն տեղ:“

Նոքա սկսան մտածել թէ ինչպէս դուրս հանեն գողերը: Վերջապէս վճռեցին. նախ և առաջ կանգնեցաւ էշը, առջևի ոտերը պատուհանի վրայ դնելով, շունը ելաւ էշի կռնակի վրայ, կատուն նստաւ շան վրայ, աքաղաղը թռաւ ու նստաւ կատուի գլխի վրայ: Աւարտելով այս գործողութիւնը, նոքա նշանացի առնելով սկսեցին միասին իրանց երաժշտութիւնը. էշը սկսաւ զռալ, շունը հաչել, կատուն մլաւել, աքաղաղը

երգել․ յետոյ յանկարծ ապակիները ու շըր-
ջանակները ջարդ ու փշուր անելով ներս
սենեակ թափուեցան։

Գողերը լսելով այդ աղաղակը և հաս-
տատ իմանալով որ անցաւոր մարդ երբէք
պատուհանից դահլիճ չի մտնիր, զարհու-
րած վերկացան ու բոլորեքեան փախան
անտառ։ Այս յաղթութիւնից յետոյ, չորս
ընկեր նստան սեղանի առաջ, սեփականե-
ցին ինչ որ մնացել էր և այնպէս կերան որ
կարծես թէ մի ամիս ծոմ էին պահել։
Երբ ընթրիքը վերջացաւ, նոքա անցուցին
ճրագները և որոնեցին հանգստութեան
համար մի մի ապահով տեղ, իւրաքան-
չիւրը իր բնաւորութեան համեմատ։ Էշը
պառկեցաւ աղբի վրայ, շունը դրան յե-
տևը, կատուն կրակարանի մէջ տաք ա-
ծուխի մօտ, աքաղաղը գերանի վրայ, և
որովհետև երկար ճանապարհից յոգնած
էին, իսկոյն քուն մտան։ Կէս գիշերից
յետոյ, գողերը նկատեցին հեռուից, որ
տան մէջ լոյսը մարել էր և ամենայն ինչ
խաղաղ էր. նոցա առաջնորդը ասաց. „Մեզ
հարկաւոր չէր այդ օրինակ յաղթուել.“ և
հրամայեց ծառաներից մինին գնալ իմա-
նալ թէ ինչ է պատահել տան մէջ։ Պատ-

գամաւորը ամենայն ինչ խաղաղութեան մէջ գտաւ: Մտնելով խոհանոց և կամենալով ճրագ վառել, առաւ մի լուցկի և, որովհետև կատուի փայլուն ու կրակոտ աչքերը երկու վառած ածուխի կ'նմանէին, մօտացրաւ նրա աչքերին վառելու համար. բայց կատուն, որ չէր սիրում այդ տեսակ կատակներ, թռաւ նրա երեսի վրայ ու ճանկռտեց մռմռալով: Մարդը սարսափած վազեց դէպի դուռը փախչելու, բայց դրան առաջ պառկած շունը յարձակվեցաւ վրան ու խածաւ ոտքից, և որովհետև անցնումէր գաւթի աղբի մօտով, էշը իր քամակի ոտերով տուաւ սաստիկ քացի, մինչդեռ աքաղաղը, զարթնելով այս շփոթմներից և արդէն տակաւին կայտառ, գանչեց գերանի վրայից „Կուքուլիկու:“ Պատգամաւորը բոլոր ուժը ոտներին տալով, եկաւ դողերի մօտ և ասաց. „Մեր տան մէջ կայ մի սարսափելի կախարդ, որ փչեց վրաս և ճանկեց երեսս իր երկայն մատերով. դրան առաջ կանգնած է մի պահապան սուրը ձեռքին, որով կտրեց ոտս. գաւթում ման է գալիս մի վիշապ, որ մի ահագին լախտով խփեց մէջքիս, իսկ կտուրի վրայ նստած է դատաւոր, որ գանչեց. «Բերէք իմ մօտ

այդ գողը, և ահա այսպէս յետևս չնայած փախայ ։“

Այն օրից սկսած, գողերը էլ չէին համարձակվում այն տունը մտնել, ուր Պրեմի չորս երաժիշտքը այնպէս երջանիկ կեանք էին վայելում, որ այնուհետև երբէք չէին ուզում թողնել։

---

## 4

### ԱՐՋԻ ՄՈՐԹԻ ՀԱԳԱԾ ՄԱՐԴ.

Մի երիտասարդ մտել էր զօրք, որի մէջ շատ քաջ էր բռնում իրան, գնդակների դէմ միշտ առաջինը ելանելով։ Պատերազմի ժամանակ նա միշտ բաղդաւոր էր, բայց երբ հաշտութիւն արին, զօրապետը տուաւ նըրան արձակուրդը և հրամայեց գնալ ուր որ կամենումէ։ Որովհետև նրա ծնողքը մեռած էին, բնակարան էլ չունէր, ուստի խնդրեց իր եղբայրներից տեղ տալ իրան մինչև պատերազմի սկիզբը։ Բայց նոքա կոշտ սիրտ ունենալով, պատասխանեցին որ ոչինչ չեն կարող անել նրա համար, այն

պատճառաւ որ նա ոչ մի բանի ընդունակ չէ և եթէ պարտաւոր է մի կերպով իր գըլուխը ինքը պահել: Խեղճ զինուորը բացի ատրճանակից ուրիշ բան չունէր, դնելով նրան ուսերի վրայ, գնաց ուր որ աչքերը նայումէին: Մտնելով մի դաշտ, ուր բացի շրջապատ ծառերից ուրիշ բան չէր երևում, նստաւ մի ծառի ստուերի տակ, տըխրութեամբ մտածելով իր վիճակի վրայ: „Ես փող չունիմ, երբէք չեմ սովորել ուրիշ արուեստ բացի պատերազմից, և այժմ հաշտութեան ժամանակ ես մի բանի պէտք չեմ գալիս. ինչ անես, վերջս սովատանջ մեռնել պիտի լինի:“

Մինչ նա այդ մտածմունքի մէջ էր, լսեց մի ձայն, և բարձրացնելով աչքերը, տեսաւ իր մօտ մի անծանօթ մարդ կանանչ, բաւականին հարուստ շոր հագած, բայց ահագին սմբակներով: „Ես լաւ գիտեմ քեզ ինչ հարկաւոր է, ասաց անծանօթը, գիտեմ որ փողի կարօտութիւն ունիս. ես կ'տամ քեզ որքան որ ուզումես, միայն եթէ իմանամ որ վախկոտ չես, ըստ որում ես անպէտների հետ գործ չեմ ունենում:“

— Օ՜ զինուոր և վախկոտ, պատասխանեց միւսը, երկու այնպիսի բառեր են, որոնք

երբէք միասին չեն գործածվում։ Դու կարող ես ինձ փորձել։

„Դէ, լաւ, ասաց անձանօթը, նայիր քո յետև։“

Զինուորականը յետևը նայած չնայած տեսաւ մի սարսափելի արջ, որ պոռոտալով վազումէր նրա վրայ։ „Ո՜հ, ո՜հ, բացագանչեց նա, ես այս րոպէիս քթիդ ծակերը կ'խատողեմ որ ձայնդ կտրես.“ և ուղղելով հրացանը նրա վրայ, զարկեց ցռուկին, և արջը նոյն րոպէին անկենդան փռուեցաւ գետնի վրայ։

„Թէ՛ և տեսնումեմ, ասաց անձանօթը, որ դու քաջասիրտ մարդ ես, բայց պարտական ես կատարել էլ ուրիշ պայմաններ։“

— Ո՛չ մի բան չէ կարող ինձ բռնել, ասաց զինուորականը, որ շատ լաւ տեսնումէր դիմացի խօսողը ով էր, եթէ միայն մըշտական ազատութիւնս վտանգի մէջ չընկնի։

„Ինքդ այդ կ'դատես, ասաց անձանօթը. դու եօթը տարի պարտական ես ո՛չ լուացուել, ո՛չ մօրուքդ և ոչ մազերդ սանդրել, ո՛չ եղունգներդ կտրել և ոչ աղօթք անել։ Ես քեզ կ'տամ շոր և մի վերարկու որ հագնես բոլոր այդ ժամանակը։ Եթէ դու մեռնես այդ միջոցին, իմը կ'լինես, բայց

եթէ դու եօթը տարուց աւելի ապրես, բոլոր կեանքդ կ՚լինես ազատ և հարուստ:"

Զինուորը մտածեց իր թշուառ դրութեան վրայ. նա, որ քանի անգամ արհամարհել էր մահը, լաւ կարող էր այս անգամ էլ գլուխը վտանգի մէջ դնել, համաձայնեցաւ: Սատանան հանեց իր կանանչ զգեստը և տուաւ նրան ասելով. „Քանի որ այս զգեստը վրադ կ՚լինի, ամեն անգամ ձեռքդ գրպան տարածիդ, մի բուռն ոսկի կ՚հանես:" Յետոյ հանելով արջի մորթին, յաւելցրեց. „Քեզ հարկաւոր չէ ունենալ ուրիշը. այս զգեստի համար քեզ կ՚անուանեն Արջի Մորթի:" Այս ասելով, սատանան աներևոյթ եղաւ:

Զինուորը հագաւ շորը և տանելով ձեռքը գրպանին, համոզուեցաւ որ սատանան չէր խաբել: Զգեց վրան նոյնպէս արջի մորթին և ընկաւ ճանապարհ աշխարհ շրջելու, վայելելով եղանակի բարիքները և չխնայելով մի բան, որ կարող էր զուարճացնել մարդուս մարմինը և թեթևացնել նրա քսակը: Առաջի տարին, դեռ ևս նա մարդու նման էր, բայց երկրորդը նա դարձաւ կատարեալ հրէշ: Նրա մազերը գրեթէ ծածկում էին բոլոր երեսը, խառն ու

քրքրած մօրուքը թաղիքի կնման էր և երեսը այնպէս կեղտոտած էր, որ եթէ ցան ցանէին, անպատճառ կ՚բանէր։ Ամէնքը նրանից վախում էին, բայց որովհետև նա տալիս էր աղքատաց առատ ողորմութիւն, խնդրելով միայն նոցանից աղօթք անել որ եօթը տարուայ մէջ չմեռնի, և որովհետև համարվում էր խոնարհ ու բարեսիրտ, ուստի միշտ գտնում էր մի ապաստան։

Չորրորդ տարին նա եկաւ պանդոկ, ուր պանդոկապետը չկամեցաւ նրա ընդունել և ախոռում անգամ տեղ տալ, կասկածելով որ մի՛ գուցէ վախցնէ ձիերը։ Բայց Արջի Մորթին հանելով գրպանից բուռն ոսկի, պանդոկապետը համաձայնեցաւ և տուաւ նրան սենեակ գաւթի անկիւնում այն պայմանով որ երեսը մարդու ցոյց չտայ, որպէս զի պանդոկի պատիւը չկորչի։

Մի երեկոյ Արջի Մորթին նստած իր սենեակում մտածում էր թէ շուտով արդեօք եօթը տարին կ՚վերջանայ, մինչ տեսնես լսեց կից սենեակից մի մարդու լաց. որովհետև շատ բարեսիրտ էր, բացեց դուռը և տեսաւ մի ծերունի, որ գլուխը ձեռքի մէջ բռնած հառաչում էր, բայց Արջի Մորթին մտնելիս, մարդը կամեցաւ փախչել. վեր-

ջապէս նա հանդստացաւ, երբ լսեց մարդու ձայն, որ նրա հետ խօսումէր: Արջի Մորթին բարեկամական խօսքերով կարողացաւ պատմել տալ նրան իր տխրութեան պատճառը: Նա կորուսել էր բոլոր իր հարստութիւնը և աղջիկների հետ այնպէս աղքատացած էր, որ միանգամայն կարողութիւն չունէր վճարելու իր պարտքերը պանդոկապետին, ինչու համար և ուզումէին նրա բանտ նստացնել: „Եթէ դուք մի ուրիշ հոգացողութիւն չունէք, ասաց նրա Արջի Մորթին, իմ փոքր բաւական կ՚լինի ձեզ նեղ տեղից հանելու,“ և կանչելով պանդոկապետը իր մօտ, վճարեց պարտքը և տուաւ ևս այդ դժբաղդներին մի մեծ գումար փող նոցա պիտոյքի համար: Ծերունին, այս օրինակ ազատուած, չէր իմանում ինչպէս յայտնել իր շնորհակալութիւնը: „Ե՛կ իմ հետ, ասաց նա, իմ աղջիկներս շատ սիրուն են, դու նոցանից մինը կարող ես քեզ համար կին առնել: Նոքա չեն մերժել քեզ, եթէ իմանան ինչ որ դու ինձ համար արիր: Թէև քո դէմքը փոքր ինչ տարօրինակ է, բայց լաւ կինը կարող է քեզ կարգի բերել:“

Արջի Մորթին համաձայնեցաւ ուղեկից լինել ծերունուն, բայց երբ մեծ աղջիկը

նկատեց նրա սոսկալի երեսը, այնպէս վախեցաւ, որ ճիչ բարձրացնելով փախաւ. երկրորդը ոտի վրայ հաստատ կանգնած, զննեց ոտքից մինչեւ գլուխը եւ ասաց „Ի՞նչպէս սրա ամուսին լինել, տակաւին մարդկային կերպարանք չունի, ես գերադանց կ'համարեմ տօնավաճառի այն սափրած արջը մարդու պէս զգեստաւորուած, սպետական մուշտակով եւ սպիտակ ձեռնոցներով: Գո՛նէ նա միայն տգեղ էր, կարելի էր նրան ընդելանալ:

Բայց բոլորից կրտսերը ասաց. „Սիրելի հայր, կարծեմ դա մի բարեսիրտ մարդ պէտք է լինի, որովհետեւ նա մեզ օգնեց, դուք նրա խոստացել էք մի կին, հարկաւոր է խօսքից յետ չկենալ:" Տարաբաղդաբար Արջի Մորթու երեսը ծածկուած էր մազերով եւ կեղտով, եթէ ոչ կարելի էր տեսնել նրա ուրախութիւնը որ փայլեցաւ երեսին վրայ այդ խօսքերը լսելիս: Նա հանեց իր մատից մի մատանի եւ, կէսուակէս կոտրելով, տուաւ մի կէսը իր հարսին եւ պատուիրեց լաւ պահել, իսկ միւս կէսը իրան առաւ: Այն կէսի վրայ որ տուել էր աղջկան, գրեց իր անունը, եւ միւսի, որ առել էր իրան համար, գրեց հարսնացուի

անունը։ Յետոյ հրաժարական ողջոյն տալով նրան, ասաց. „Ես քեզանից բաժանըվումեմ երեք տարուայ, եթէ վերադառնամ այդ միջոցին, կ՚պսակվենք, իսկ եթէ ոչ, կ՚նշանակէ որ մեռած եմ և դու կ՚լինես ազատ։ Խնդրիր Աստուծուց, որ նա պաշտպանէ իմ կեանքը։“

Մեղճիկ հարսնացուն հագաւ սև շոր, և արտասունքը թափվումէին նրա աչքերից, երբ նա մտածումէր իր ամուսնու վրայ։ Քոյրերը անխղճաբար ծիծաղումէին վրան։ „Զգո՛յշ եղիր, ասումէր մեծը, որ երբ ձեռքդ տաս նրան, իր թաթերովը կաշին չի հանէ։“

— Վստա՛հ եղիր, յաւելացնումէր երկրորդը. արջերը սիրումեն քաղցրութիւն, երբ նրա դուռը գաս, անպատճառ հում հում կուլ կ՚տայ քեզ։ Դու պէտք է միշտ գլուխդ ծռես, ապա թէ ոչ զգո՛յշ եղիր նրա մռմռոցից։

„Բայց, շարունակումէր երկրորդը, հարսանիքի օրը ուրախ կ՚լինի, արջերը անման պար են գալիս։“

Մեղճիկ հարսնացուն ամենևին չէր բարկանում այս վիրաւորական խօսքերի վրայ։ Իսկ Արջի Մորթին թափառումէր ու թափառում բարեգործութիւն անելով, որքան

որ կարողանումէր, առատօրէն փող բաժանելով աղքատաց, որ նոքա աղօթք անեն նրա համար։

Վերջապէս երբ եօթը տարուայ վերջին օրը եկաւ, նա վերադարձաւ դաշտ ու նրատաւ շրջապատող ծառերի մէջ։ Մի մեծ քամի բարձրացաւ, շուտով սատանան խոժոռ դէմքով երեւան եկաւ և ձգելով գլխուորի առաջ հին շորը, պահանջեց իր կանանչ զգեստը։ „Կա՛ց, ասաց Արջի Մորթին, առաջ պարտաւոր ես ինձ մաքրել։“ Սատանան ստիպուեցաւ ակամայ գնալ ջուր բերել, լուանալ Արջի Մորթին, սանդրել նրա մազերը և կտրել նրա եղունգները։ Մարդը կրկին ստացաւ քաջ գլխուորի կերպարանք և եղաւ աւելի սիրուն, քան թէ առաջ էր։

Արջի Մորթին թեթեւութիւն զգաց, ազատվելով այդ մեծ բեռնից, երբ Սատանան այլ նեղութիւն չտուած հեռացաւ։ Նա վերադարձաւ քաղաք, հագաւ մի գեղեցիկ թաւիշեայ զգեստ և նստելով չորս ձի լըծած կառք, հրամայեց քշել հարսնացուի տունը։ Ոչ ոք չճանաչեց նրան։ Հայրը համարելով երեւելի զօրապետ, տարաւ նրա իր աղջկանց մօտ։ Երկու մեծ քոյրերը

նստացրին նրա իրանց մէջ տեղը և պաշտելով հոյակապ կերակուր, յայտնեցին միաբերան, որ երբէք չէին տեսած նրա նման սիրուն ասպետ: Իսկ նրա սևազգեստ հարսնացուն լուռ ու վիզը ծուկ նստած էր դէմ ուդէմ: Վերջապէս հայրը հարցրեց թէ կամենո՞ւմ է արդեօք ամուսնանալ իր աղջկանց մինի հետ: Երկու մեծերը վազեցին իրանց սենեակը զարդարուելու համար, պատճառ որ ամեն մէկը նոցանից համարումէր իրան գերադաս գեղեցկութեամբ:

Ընծանօթը մնալով մենակ իր հարսնացուի հետ, առաւ գրպանից մատանու կէսը, ձգեց գինով բաժակի մէջ և առաջարկեց նրան: Երբ նա խմեց և տեսաւ բաժակի մէջ այդ կտորը, որ կախած էր իր վզից, մօտացրաւ առաջինին և երկուսն էլ կպան մէկ մէկու: Այս բանից յետոյ նա ասաց աղջկան „Ես քո ցանկալի ամուսինն եմ, որ դու տեսել էիր արջի մորթով. հիմի, Աստուծոյ ողորմութեամբ, ես ստացայ իմ մարդկային կերպարանքը և մաքրուեցայ կեղտերից:“ Եւ գրկախառնելով նրան սկսաւ համբուրել երեսից: Նոյն իսկ րոպէին երկու քոյրը զարդարւած մտան սենեակ, բայց երբ նոքա տեսան, որ այդ սիրուն մարդը,

որ երբեմն արջի մորթի էր հագած, պատ-կանումէ փոքր քրոջ, փախան մեծ տհաճու-թեամբ և կատաղութեամբ: Առաջինը գնաց մի ջրհորի մէջ խեղդուեցաւ, իսկ երկրորդը կախուեցաւ ծառից:

Երեկոյեան դուռը բաղխեցին, փեսան բանալով դուռը, տեսաւ կանանչազգեստ սատանան որ ասաց. „Թէ և ես կորուսի քո հոգին, բայց նրա տեղ ստացայ ուրիշ եր-կուսը:“

---

5

## ՀԱՒԱՏԱՐԻՄ ՅՈՎՀԱՆՆԷՍԸ.

Ժամանակով կար մի ծեր թագաւոր: Սա մի օր հիւանդացաւ և զգալով որ շատ չէր մնացել այս աշխարհից միւսը անցնե-լու, կանչեց իր հաւատարիմ Յովհաննէս ծառան: Այս Յովհաննէսը թագաւորի սի-րելի ծառան էր, և կոչուած էր հաւատա-րիմ այնոր համար, որ բոլոր իր կեանքը հաւատով ու արդարութեամբ ծառայել էր իր տիրոջ: Երբ Յովհաննէսը եկաւ, թա-

գաւորը ասաց. „Իմ հաւատարի՛մ Յոլհաննէս, զգուշեմ որ մահս մօտենում է, բայց իմ միակ հոգացողութիւնս այժմ որդիս է, որ դեռ ևս շատ դեռահաս ու անփորձ երիտասարդ է: Խոստացի՛ր ինձ հոգալ նրա վրայ, սովորեցնել ինչ որ հարկաւոր է և լինել նրան երկրորդ հայր, այն ժամանակ ես հանգիստ կըմեռնեմ:“

— Ես չեմ թողնել նրան, պատասխանեց Յոլհաննէսը, կ'ծառայեմ հաւատով ու արդարութեամբ, կեանքս էլ չեմ խնայել:

„Այժմ ես կ'մեռնեմ հանգիստ, ասաց ծերունին: Իմ մահից յետոյ, կըցոյց տաս նրան բոլոր պալատը, սենեակները, վերնատունը, մառանները իրանց բոլոր գանձերով, միայն վերջին սենեակը, որ մեծ պատշգամբի ծայրումն է, ցոյց մի՛ տուր: Այն տեղ պահվում է ՈՍԿԵԳՄԲԵԹԻ դշխոյի պատկերը: Երբ նա կ'նայի այդ պատկերի վրայ, այնպէս կ'սիրահարվի, որ իսկոյն անզգայ կ'ընկնի այն տեղ, իսկ վերջերում իր անձը անբաղդութեան մէջ կըձգէ նրա պատճառով: Աշխատի՛ր զգուշացնել այդ ձախորդութիւնից:“

Հաւատարիմ Յոլհաննէսը էլ մի անգամ կրկնեց իր խոստմունքը և այնուհետև

թագաւորը հանգստացած խոնարհեց գլուխը բարձի վրայ ու փչեց հոգին:

Երբ թաղեցին ծերունի թագաւորը, Ցոլհաննէսը ասաց նրա յաջորդին. „Ես խոստացայ հօրդ ծառայել քեզ հաւատով և արդարութեամբ, կեանքս էլ չխնայել: Ես կ'պահեմ խօսքս և կ'լինեմ քեզ էլ հաւատարիմ, ինչպէս էի հանգուցեալ հօրդ:“

Ողբաց արքայորդին, տրտմեցաւ հանգուցեալի վրայ և վերջապէս սփոփեցաւ:

„Այժմ ժամանակ է քեզ տեսնելու քո ժառանգութիւնը, ասաց Ցոլհաննէսը. ես քեզ ցոյց կըտամ հօրդ ամբողջ պալատը:“ Նա մանածաւ պալատի բոլոր սենեակները, ցոյց տուաւ բոլոր գանձերը, բոլոր շքեղազարդ դահլիճները, միայն մի դուռն, որ տանումէր վերջին սենեակը, չկամեցաւ բանալ: Այդ սենեակի մէջ պահվումէր դըշխոյի վտանգաւոր պատկերը: Այդ պատկերը այնպէս դրուած էր, որ դուռը բացուածին պէս, ուղղակի աչքի առաջ էր գալիս, և այնպէս կենդանի նկարուած էր, որ միայն լեզու չունէր որ խօսէր: Արքայորդին նկատելով որ Ցոլհաննէսը մի դուռը փակ թողեց, հարցրեց թէ ինչո՞ւ համար նա չէր բաց անում այդ դուռը: — „Այդ

սնտուկի մէջ կայ մի բան, պատասխանեց Յովհաննէսը, որից դու կարող ես վախենալ:“

— Ես շրջեցի բոլոր պալատը, ասաց արքայորդին, անշուշտ և փափագում եմ տեսնել ինչ կայ դրա մէջն էլ. և կամենումէր զօրութեամբ բանալ դուռը: Բայց հաւատարիմ ծառան բռնելով ասաց. „Ես խոստացայ քո հօր չթերել քեզ այս սենեակը և ցոյց չտալ մէջի պահուած բանը, ըստ որում հետևանքը կարող է երկուսիս համար էլ վտանգաւոր լինել:

„Մեծ վտանգ և ձախորդութիւն կը-լինի, պատասխանեց արքայորդին, եթէ կամքս չկատարուի: Գիշեր ցերեկ ես կը-տանջվիմ մինչև չտեսնեմ ինչ որ դու ինձանից ծածկում ես: Ես ամենևին չեմ հեռանալ այս տեղից մինչև որ դուռը չբանաս...:“

Հաւատարիմ Յովհաննէսը տեսաւ որ ուրիշ հնար չկայ, և խոր հառաչելով հանեց նա աղետալի բանալին, բացեց դուռը ու ինքը առաջից գնաց, աշխատելով ինչպէս և իցէ ծածկել դշխոյի պատկերը, բայց իզուր. արքայորդին բարձրացաւ ոտի մատերի վրայ և տեսաւ Յովհաննէսի քամա-

կից դշխոյի պատկերը: Բայց տեսած չտեսած այդ սիրուն, ոսկեզարդ աղջկայ պատկերը, յուշաթափ ընկաւ յատակի վրայ: Հաւատարիմ ծառան բարձրացրեց և տարաւ պառկեցրաւ անկողնի վրայ: „Ահա՛ քեզ, փորձանքը արդէն պատահեցաւ, Տէր Աստուած, ի՞նչ անեմ“, և կազդուրելու համար տուաւ նրա փոքր ինչ գինի խմել:

Թագաւորի յուշաբերվելիս առաջի խօսքը եղաւ հարցնել թէ որի՞ն էր այդ գեղեցիկ պատկերը:

— Դա Ոսկէգմբեթի դշխոյինն է, պատասխանեց հաւատարիմ Յովհաննէսը:

„Իմ սէրը դէպի նա այնպէս մեծ է, շարունակեց թագաւորը, որ եթէ ծառերի բոլոր տերևները լեզուներ լինէին, դարձեալ չէին կարող բացայայտել նրան: Այս օրից ես պէտք է աշխատեմ նրան ձեռք բերել: Դու կ'օգնես ինձ, եթէ հաւատարիմ ծառայ ես:“

Հաւատարիմ Յովհաննէսը երկար մտածեց թէ ի՞նչ պատշաճաւոր կերպով ձեռք դարնէ այս բանին, որովհետև անձամբ դշխոյի աչքին ներկայանալ դժուար էր: Վերջապէս նա գտաւ մի հնար և ասաց թագաւորին. „Ինչ որ շրջապատումէ դշխոյին,

ռսկուց է, ամոռները, սկուտեղները, անօթները, բաժակները և ամեն տեսակ կարասիքը: Քո գանձարանում կայ հինգ տակառ ոսկի. մինը հարկաւոր է տալ ոսկերչաց, որ նոքա շինեն տեսակ տեսակ ոսկէ ամաններ, բաժակներ, թաչուններ, գազաններ, հազար ու մի ձևով ճիւաղներ, և այլն: Այս բոլորը շատ հաճոյ կ'գայ դըշխոյին: Մենք ճանապարհ կ'ընկնենք այդ ապրանքով և կ'աշխատենք յաջողութեամբ վերջացնել:“

Թագաւորը կանչեց տէրութեան բոլոր ոսկերիչները, որոնք աշխատեցան գիշեր ու ցերեկ մինչև որ ամեն բան պատրաստ եղաւ: Երբ որ նաւը բեռնաւորեցին, հաւատարիմ Յովհաննէսը հագաւ վաճառականի շոր. նոյնը արաւ թագաւորը, որ ոչ ոք չճանաչէ նրան: Յետոյ պարզեցին առագաստը ու նաւեցին մինչև այն քաղաքը, ուր բնակվում էր Ոսկէգմբէթի դշխոյն:

Հաւատարիմ Յովհաննէսը միայնակ ցամաք եղաւ, թողնելով թագաւորը նաւի մէջ:

— Կարելի է, ասաց նա նրան, դշխոյն կըբերեմ այս տեղ, աշխատիր որ անկարգութիւն չըլինի, ոսկէ ամանները դարսած լինին և նաւը շքեղ զարդարուած:

Այս ասելով լցրաւ իր գօտին անհամար ոսկէ զարդերով և գնաց ուղիղ Թագաւորի պալատը: Գաւիթը մտնելով տեսաւ մի մատաղահաս աղջիկ, որ ոսկէ դոյլով աղբիւրից ջուր էր հանում: Աղջիկը տուն դառնալու ժամանակ նկատեց անծանօթը և հարցրեց թէ ով էր նա: „Ես վաճառական եմ, պատասխանեց նա, և հանելով գօտին ցոյց տուաւ իր ապրանքը:

— Ի՞նչ գեղեցիկ բաներ են, բացագանչեց աղջիկը, և դնելով դոյլը գետնի վրայ, սկսաւ բոլոր զարդերը առանձին առանձին զննել —: Թո՛ղ, ասաց նա, դշխոյս տեսնէ այս բաները. նա շատ սիրումէ ոսկէ զարդեր և անպատճառ ձեզանից կըգնէ, և, բռնելով վաճառականի ձեռքից, առաւ տարաւ պալատ, ըստ որում ինքը պալատական աղախին էր:

Սակայն հաւատարիմ Յովհաննէսը պատասխանեց. „Ես մի հարուստ վաճառականի ծառայ եմ, ինչ որ տեսնումէք այս տեղ, համեմատելով տիրոջս նաւի մէջ եղածներին, գրեթէ ոչինչ են. այն տեղ դուք կ՚տեսնէք շատ գեղեցիկ և հիանալի բաներ:“ Դշխոյն կամենումէր բերել տալ այս բաները, բայց ծառան ասաց. „Խիստ շատ է,

հարկաւոր է ժամանակ և տեղ, ձեր պալատը փոքր է։“

Դշխոյի հետաքրքրութիւնը աւելի շարժեցաւ և վերջապէս բացագանչեց. „Դէ, ուրեմն առաջնորդիր ինձ մինչև այդ նաւը. ես ինքս կ'գամ տեսնել քո տիրոջ գանձերը։

Հաւատարիմ Յովհաննէսը ուրախ ուրախ տարաւ նրա նաւը և Թագաւորը տեսած պատկերից աւելի հաւանեցաւ. սիրտը ուրախութիւնից բաղխումէր։ Երբ որ դշխոյն եկաւ ծովափը, Թագաւորը առաջարկեց նրան իր ձեռքը, մինչ դեռ հաւատարիմ Յովհաննէսը, որ մնացել էր յետևը, հրամայեց նաւապետին իսկոյն խարիսխը բարձրացնել և բոլոր առագաստները պարզելով փախչել։ Թագաւորը իջաւ նրա հետ նաւի ներքին սենեակը և սկսաւ ցոյց տալ հետ զհետէ սեղանի բոլոր ըսպասքը —ամաններ, բաժակներ, թռչուններ, վայրենի գազաններ և ձիւաղներ։ Շատ ժամեր անցան, մինչև որ Դշխոյն բոլոր բաները աչքէ անցուց, և սաստիկ զբաղած լինելով, չնկատեց նաւի գնալը։ Երբ աւարտեց, շնորհակալ եղաւ կարծեցեալ վաճառականից և կամեցաւ վերադառնալ իր պալատը, բայց հասնելով տախտակամածի

մօտ, նկատեց որ լայնատարած ծովի վրայ էր, շատ հեռու ցամաք հողից և նաւը ուռած առագաստներով արագապէս առաջ էր գնում: „Դաւաճանութիւն, բացագանչեց յուսահատաբար, ինձ տանումեն. վաճառականի ձեռք ընկնել, հազարապատիկ լաւ է մեռնել:“

Սակայն թագաւորը առնելով ձեռքը, ասաց „Ես վաճառական չեմ, այլ թագաւոր, ձեզ նման լաւ ընտանիքից: Եթէ ես ձեզ յափշտակեցի խորամանկութեամբ, վերագրեցէք այդ միայն սիրոյս սաստկութեան: Իմ սէրս այնպէս զօրեղ է որ, երբ առաջի անգամ տեսայ ձեր պատկերը, յուշաթափ գետին ընկայ:“

Այս խօսքերը մխիթարեցին ու կակղեցրին դշխոյի սիրտը, ուստի և համաձայնեցաւ ամուսնանալ նրա հետ:

Մինչ նոքա նաւումէին լայնածաւալ ծովի վրայ, հաւատարիմ Յովհաննէսը, նըստած նաւի յառաջակողմը, տեսաւ օդի մէջ երեք ագռաւ, որոնք ուղիղ եկան նստան նրա առաջ: Նա ականջ դրաւ նոցա խօսակցութեան, պատճառ որ հասկանումէր նոցա լեզուն:

„Հա՛, ասում էր առաջինը, նա տանում է Ոսկէգմբեթի դշխոյն:“

— Այո՛, պատասխանեց երկրորդը, սակայն նա դեռ ևս բռնուած չէ:

„Ի՞նչպէս, ասաց երրորդը, նա նստած է նրա մօտ:“

— Այդ ոչինչ է, ասաց առաջինը, երբ նոքա ցամաք ելնեն, թագաւորին կ'բերեն հեծնելու մի խարտեաշ ձի. բայց երբ նա կ'նստի վրան, կ'սլանայ նրա հետ երկինք և այնուհետև գնա՛ ու գտիր նրա:

„Բայց, ասաց երրորդը, մի՞թէ ոչ մի հնար չկայ:“

— Միայն մի հնար կայ, ասաց առաջինը, հարկաւոր է որ մի ուրիշ մարդ յարձակուի ձիու վրայ և սպանէ ատրճանակով: Այս կերպով կարելի է ազատել թագաւորը: Բայց ո՞վ կարող է իմանալ այս. մա՛նաւանդ ով որ իմանայ ու ասէ, իսկոյն ոտից մինչև ծունկը քար կ'դառնայ:

Երկրորդ ագռաւը ասաց իր կարգին. „Ես մի ուրիշ բան էլ գիտեմ. դիցո՛ւք թէ ձին սպանած լինի, դարձեալ երիտասարդ թագաւորը չէ կարող ձեռք ձգել իր հարսնացուն: Երբ նոքա միասին կ'մտնեն պալատ, նոցա դիմաց կ'բերեն սկուտեղի վրայ

մի փառաւոր հարսանիքի շապիկ, առ երեսըս ոսկով ու արծաթով հիւսած, որ իսկապէս ուրիշ բան չէ, բայց եթէ ձիւթ ու ծծումբ, և թագաւորը հագած չի հագած կայրուի մինչև ուղեղը:

— Միթէ ոչ մի հնար չկա՞յ, ասաց երրորդը:

„Կայ մի հնար, պատասխանեց երկրորդը: Հարկաւոր է որ մի մարդ ձեռնոց հագած առնէ շապիկը ու կրակը ձգէ: Երբ շապիկը այրվի, թագաւորն էլ կազատվի: Բայց ի՞նչ օգուտ դրանից: Ով որ կ'իմանայ և կ'ասէ, ծունկից մինչև սիրտը քար կըդառնայ:“

Երրորդ ագռաւը յաւելացրեց. „Ես մի բան էլ գիտեմ. դիցո՛ւք թէ շապիկը այրուի, երիտասարդ թագաւորը դարձեալ յաջողութիւն չի ունենալ: Հարսանիքի պարահանդէսին մատաղահաս թագուհին անտարակոյս պար կ'գայ, յանկարծ նա յուշաթափ և մեռածի պէս ցած կ'ընկնի. և իսկոյն նոյն րոպէին կ'մեռնի, եթէ մինը չբարձրացնէ և չծծէ աջ ուսից երեք կաթ արիւն, որ կ'ցայտէ անմիջապէս: Բայց ով այս բանը իմանայ և ասէ, գլխից մինչև ոտը քար կ'դառնայ:“

Այս խօսակցութիւնից յետոյ, ագռաւները թռան գնացին։ Հաւատարիմ Յովհաննէսը, որ բոլորը լսել էր, այս բանից յետոյ շատ տխուր և լուռ մնաց։ Լսել, անբաղդութիւն էր թագաւորին. խօսել, այն ժամանակ իրեն անբաղդութիւն։ Վերջապէս նա ասաց ինքն իրեն. „Ես կ'ազատեմ իմ տէրս, թող կեանքիս գինովը լինի։ Երբ նոքա ցամաք հասան, ինչպէս որ ագռաւները գուշակել էին, այնպէս էլ պատահեցաւ. իսկոյն գեղեցիկ խարտեաշ ձի բերին թագաւորին. „Լաւ, ասաց նա, ես կ'հեծնեմ մինչև պալատը." և նա պատրաստուել էր նստել ձիու վրայ, մինէլ տեսնես Հաւատարիմ Յովհաննէսը, անցնելով նրա դիմացից, յարձակուեցաւ վրան և հանելով հրացանը, նոյն տեղումը սպանեց ձին։

Թագաւորի միւս ծառաները, որոնք ամենևին չէին սիրում Յովհաննէսին, բացագանչեցին թէ խելագար հարկաւոր է լինել այդպիսի գեղեցիկ կենդանին սպանելու համար, որի վրայ թագաւորը պիտի հեծնէր։ Սակայն թագաւորը ասաց նոցա. „Լռեցէ՛ք, թողէ՛ք նրան, նա իմ հաւատարիմն է. անտարակոյս ունի պատճառ այդպէս ներգործելու։"

Նորա հասան պալատը և առաջի դահլիճում մի սկուտեղի վրայ դրած էր հարսնութեան շապիկը, որ կարծես թէ ոսկով ու արծաթով էր մանած: Թագաւորը կամենումէր հագնել, բայց հաւատարիմ Յովհաննէսը մօտեց նրան և, բռնելով շապիկը ձեռնոցներով, ձգեց կրակի մէջ ու այրեց:

Միւս ծառաները սկսեցին կրկին հաչելու. „Նայեցէ՛ք մի, ասումէին Նոքա, այրումէ թագաւորի հարսնութեան շապիկը:“

Բայց երիտասարդ թագաւորը կրկնեց. „Նա, անտարակոյս, պատճառ ունի այդ անելու, թո՛ղ անէ, նա իմ հաւատարիմն է:“

Կատարեցին հարսանիքը: Այն օրը մեծ պարահանդէս եղաւ և հարսնացուն սկսեց կաքաւել: Այն րոպէից հաւատարիմ Յովհաննէսը աչքերը նրա վրայից չէր առնում: Մինչև տեսնես թագուհին թուլացաւ ու յուշաթափ ընկաւ գետին: Իսկոյն Յովհաննէսը բարձրացրեց նրան ու տարաւ իր սենեակը և այն տեղ պառկեցնելով նրա անկողնի վրայ, ծծեց աջ ուսից երեք կաթիլ արիւն որ ցայտումէր. Նոյն վայրկենին նա շունչ առաւ և սթափեցաւ. բայց երիտասարդ թագաւորը, որ բոլորը տեսաւ և ոչինչ չէր հասկանում Յովհաննէսի արածից,

բարկացաւ ի վերջոյ նրա վրայ և նստա-ցրաւ բանտ։

Մի՛ւս օր հաւատարիմ Յովհաննէսը դատապարտեցին մահի և տարան կախաղանի առաջ։ Բարձրանալով սանդուղի վրայ, նա ասաց. „Ամենայն մարդ իր մահից առաջ իրաւունք ունի խօսելու. կարողե՞մ ես էլ։“

„Խօս քեզ տալիս եմ իրաւունք, ասաց Թագաւորը։

— Դէ՛, լա՛ւ, լսիր. ինձ անիրաւաբար դատապարտեցին, մինչև այսօր ես հաւատարիմ մնացի։

Այնուհետև նա պատմեց ինչ որ լսել էր նաւի մէջ ագռաւների խօսակցութենից, ինչու և պարտաւորվել էր նրա կեանքը ազատելու համար բոլոր այդ բաները անել։

„Ո՜հ, իմ հաւատարիմ Յովհաննէս, բացագանչեց Թագաւորը. ես շնորհումեմ քեզ կեանք. շուտով իջցրէ՛ք դրա։“ Բայց այս վերջի խօսքը ասածին պէս, հաւատարիմ Յովհաննէսը յուշաթափ ընկաւ և քար դարձաւ։

Թագաւորը և Թագուհին սաստիկ տրտմեցան այս բանիս վրայ։ „Աւա՜ղ, ասում էր Թագաւորը, այնքան հաւատարմութիւնը այսպէս վատ վարձատրուեցաւ։“ Նա հրա-

մայեց բերել արձանը իր ննջարանը և դը-
նել անկողնի մօտ: Ամէն վրան նայածին ար-
տասուելով կրկնումէր. „Աւա՜ղ, իմ հաւա-
տարիմ Յովհաննէս, ինչո՞ւ չեմ կարող քեզ
կեանք պարգևել:“ Մի քանի ժամանակից
յետոյ, Թագուհին ծնաւ երկուորեակ որ-
դիք, որոնք յաջողապէս մեծացան և եղան
ուրախութիւն իրանց ծնողաց: Մի օր երբ
Թագուհին ժամ էր գնացել, երկու որդիքը
խաղումէին սենեակում իրանց հօր հետ:
Նրա աչքերը ընկան արձանի վրայ և չկա-
րենալով արտասունքները բռնել, ասաց.
„Աւա՜ղ, իմ հաւատարիմ Յովհաննէս, ին-
չո՞ւ չեմ կարող քեզ կեանք պարգևել: Իսկ
արձանը լեզու առնելով ասաց. „Դու այդ
կարող ես անել, եթէ յանձն առնես զոհել
այն, որ քեզ ամէն բանից թանգ է:“

— Ինչ որ ունիմ այս աշխարհում, կը-
զոհեմ քեզ համար, բացագանչեց Թագա-
ւորը:

„Շատ բարի, ասաց արձանը, ինձ կեն-
դանութիւն պարգևելու համար հարկաւոր
է, որ դու կտրես քո երկու որդւոց գլուխ-
ները և նոցա արիւնով սրբես ինձ:“

Թագաւորի երեսի գոյնը թռաւ, լսելով
այս սոսկալի պայմանը, բայց մտաբերելով

անձնատուութիւնը այդ հաւատարիմ ծառային, որ զրկուել էր իր կեանքից նրա համար, հանեց սուրը, իր ձեռքով կտրեց որդւոց գլուխները և սրբեց նոցա արիւնով քարարձանը:

Իսկոյն արձանը կենդանացաւ և հաւատարիմ Յովհաննէսը, ժիր և ուրախ, դիմաց ելաւ: Սակայն, ասաց թագաւորին. „Քո մըտերմութիւնը կ'առանայ իր վարձատրութիւնը:“ Եւ առնելով երեխայոց գլուխները, դրեց ուսերի վրայ և իրանց արիւնով քսեց նոցա խոցերը. նոյն րոպէին կենդանացան և սկսան թռչկոտել, ասես թէ ոչինչ չէր պատահած: Թագաւորը անասելի ուրախացաւ: Լսելով թագուհու ոտքի ձայնը, հրամայեց Յովհաննէսին և որդւոցը թաքնուիլ մի մեծ պահարանի մէջ: Երբ թագուհին ներս մտաւ, հարցրեց նրան. „Աղօթք արի՞ր եկեղեցում:“

— Այո՛, պատասխանեց նա, և ես անդադար մտածումէի հաւատարիմ Յովհաննէսի վրայ, որ մեր պատճառով այնպէս անբաղդացաւ:

— Նազելի՛ կին, մենք կարող ենք նրա կեանք տալ միայն մեր երկու որդւոց կեանքի գնով:

Թագուհին կարմրեցաւ և սիրտը ճմլեցաւ, սակայն պատասխանեց. „Այդ զոհը մենք պարտական ենք նրա անձնազոհութեան համար:“

Թագաւորը զարմանալով, որ ամուսինն էլ նոյն օրինակ էր մտածում, բացեց պահարանը և դուրս հանեց միջից հաւատարիմ Յովհաննէսը և իր երկու որդիքը: „Փառք Աստուծոյ, յաւելացրեց նա, նա փրկված է և մեր որդիքն էլ կենդանի են:“ Եւ պատմեց թագուհուն ի՛նչ որ անցել էր: Եւ մինչև վերջը նոքա միասին երջանիկ ապրեցան:

---

6

ԵՐԵՔ ԲԱՂԴԱՒՈՐ ԺԱՌԱՆԳ.

Մի հայր կանչեց իր երեք որդիքը և տուաւ նոցա—առաջինին մի աքաղաղ, երկրորդին մի մանգաղ և երրորդին մի կատու: „Ես ծերացել եմ, ասաց նա, մահս էլ մօտացել է. քանի որ կենդանի եմ, ուզում եմ խնամք տանել ձեր ապագայի վրայ: Ես

փող չունիմ ձեզ թողնելու և այժմ ինչ որ տալիս եմ ձեզ, անտարակոյս, ձեր աչքին մի արժողութիւն չունի: Բայց իմացէ՛ք որ նորա արժողութիւնը ձեր տնօրէնութիւնից է կախուած: Աշխատեցէ՛ք ամեն մէկդ մի այնպիսի երկիր գտնել, որ տեղ որ ձեր ունեցածը լսած ու տեսած չլինեն:"

Հօր մահից յետոյ, անդրանիկ որդին ընկաւ ճանապարհ իր ժառանգութիւնով. բայց ո՛ւր չէր երթում, աքաղաղը արդէն ամենեցուն յայտնի էր. նոքա ամեն քաղաքի զանգակատունների վրայ նստած պտոյտ էին գալիս. գիւղերում անդադար լսւում էր նոցա ձայնը և ոչ ոքին զարմանալու բան չէր աքաղաղը, այնպէս որ մեր խեղճը յուսահատվել էր յաջողութեան մասին: Վերջապէս եկաւ մի կղզի, ուր ոչ ոք չէր տեսած աքաղաղ: Տեղացիք մեծ շփոթութեան մէջ էին, ժամանակը բաժանել չիմանալուն պատճառով: Առաւօտն ու երեկոն զանազանում էին, բայց գիշերը, ո՛վ քուն չէր լինում, չգիտէր որ ժամն էր: „Տեսնո՛ւմ էք, ասաց նա նոցա, այս փայլուն կենդանին, կարմիր թագով և ասպետական կարթաւոր կօշիկներով, գիշերը որոշած ժամին երեք անգամ խօսում է. վերջինը, երբոր արեգակը

ծախում։ Եթէ ցերեկը երգէ, իմացէ՛ք որ եղանակը փոխվելու է։“

Այս խօսակցութիւնը կղզիաբնակներին շատ հաճոյ թուեցաւ. Հետեւեալ գիշերը, ոչ ոք քուն չեղաւ եւ ամենաքեան մեծ հետաքրքրութեամբ լսեցին աքաղաղին, որ հետ զհետէ երկու, չորս ու վեց ժամերուն երգեց։ Նոքա հարցրեցին թէ ծախու է արդեօք այդ գեղեցիկ թռչունը եւ թէ քանի՞ է արժում։ „Այնքան ոսկի, որքան որ մի էշ կարող է տանել,“ պատասխանեց նա։ Ամենքը միաբերան բացագանչեցին, որ այդ գումարն աննշան բան է այդ հրաշալի թռչունի համար, եւ շտապելով վճարեցին պահանջած գումարը։

Երբ անդրանիկը հարստացած վերադարձաւ, փոքր եղբայրը սաստիկ զարմացաւ։ Երկրորդը վճռեց նոյնպէս գնալ, յուսալով որ գուցէ իր մանգաղն էլ մի բանի կ՚ծառայէ։ Սակայն, որ տեղից չէր անցնում, միշտ տեսնումէր գեղջուկներ իրենի պէս լաւ մանգաղներով։ Վերջապէս, բարեբաղդաբար, եկաւ մի կղզի, ուր մանգաղ ասած բանդ ոչ ոք չգիտէր։ Երբ ցորենը հասնում էր այդ երկրում, նոքա խիստ հրացաններով զարնում ձգումէին խոտանը։ Բայց այդ

տեսակ հունձը շատ անկանոն էր. գնդակ-
ները կամ հունձին վրայից էին անցնում
կամ փոխանակ խոզանի կպնում հասկերին,
ինչու և շատ ցորենահատներ կորչումէին.
Թո՛ղ այդ, գործողութիւնը լինումէր անա-
սելի որոտմունքով: Երբ մեր բարեկամը
սկսաւ նոցա առաջ հանդարտ ու շուտ հըն-
ձել ցորենը, ամէնքը բերանները բացին և
աչքերը ցցած նայեցան վրան: Նոքա ուղե-
ցած գնով գնեցին նրանից և տուին այն-
քան ոսկի, որքան որ մի ձի կարող էր տա-
նել: Երրորդ եղբայրը իր կարգին կամեցաւ
նոյնպէս օգուտ ստանալ կատուից: Մինչ
նա ցամաք հողի վրայ էր, ոչ մի յաջողու-
թիւն չունեցաւ եղբարց նման. ամէն տեղ
կար կատու և այնքան շատ, որ նոր ծնած-
ներից խումբ խումբ խեղդումէին ջրի
մէջ: Վերջապէս նա եկաւ մի կղզի ուր
որ, բարեբաղդաբար, կատու չէին տեսած,
բայց դրա հակառակ մուկերը այնպէս առատ
բազմանումէին, որ սեղաններին ու նստարան-
ների վրայ տանուտիրոջ առաջ պար էին
գալի: Ամբողջ կղզին տանջվումէր այդ պա-
տիժից, ինքը թագաւորը չէր կարող իր պա-
լատի մէջ ազատվել նոցա ձեռքից. բան չէր
մնացել, որ նոքա չկրծէին ու չապականէին:

Բերին կատուն և մի ակնթարթում այնպէս յատակեց երկու դահլիճը, որ բնակիչքը խնդրեցին թագաւորին ձեռք բերել տէրութեան համար այդ թանկագին կենդանին: Թագաւորը ծախս չարած գնեց կատուն, տալով այնքան ոսկի, որքան կարող էր մի էշ տանել. և երրորդ եղբայրը վերադարձաւ հայրենիքը եղբայրներից աւելի հարստացած:

---

7

## ԳԵՐԵԶՄԱՆ.

Մի հարուստ կալուածատէր մի օր դըրան առաջ կանգնած նայում էր իր դաշտերի ու պարտէզների վրայ: Նրա հովիտը ծածկած էր հունձով և ծառերը պտուղներով: Համբարները անցած տարիների ցորենով այնպէս լցուած էին, որ առաստաղի բոլոր տախտակները ծռուել էին նրանց տակը: Նրա գոմքը լիք էին պարարտ եզերով, գէր գէր կովերով, առողջ ու փայլուն ձիերով: Նա մտաւ իր սենեակը և ուղղեց

հայեացքը տրկղի վրայ, որի մէջ պահումէր փողը։ Սակայն, որովհետեւ ընկղմել էր խոր մտածմունքի մէջ իր հարստութեան մասին, ականջին հասաւ մի դաղտնի ձայն, որ ասումէր. „Այդ բոլոր ոսկովդ կացուցի՞ր արդեօք բաղդաւոր քեզ շրջապատողներին, մտածեցի՞ր աղքատների թշուառութեան վրայ, բաժանեցի՞ր քո հացը քաղցածների հետ. գո՞հ էիր քո ունեցածովդ եւ չէի՞ր ուզում աւելի ունենալ։“

Նրա խղճմտանքը պատասխանեց. „Ես միշտ խստասիրտ եւ անողոքելի եմ եղել, երբէք ոչինչ չեմ արած իմ ծնողաց ու բարեկամաց համար. երբէք չեմ մտածել Աստուծոյ վրայ, այլ միայն իմ հարստութիւնս աւելցնելու։ Երբ բոլոր աշխարհը անգամ իմս լինէր, ես դարձեալ բաւական չէի լինիլ։“

Այս մտածողութիւնը վախեցրաւ նրա, եւ ծունկերը այնպէս սաստիկ դողումէին, որ նա ստիպվեցաւ նստել։ Նոյն րոպէին դուռը բաղխեցին։ Բաղխողը նրա դրացիներից մինն էր, մի խեղճ մարդ շատ զաւակաց տէր, որոնց չէր կարող կերակրել։ „Ես լաւ գիտեմ, մտածումէր նա, որ իմ դրացիս աւելի խստասիրտ է, քան թէ հա-

րուստ, և անտարակոյս կ՚մերժէ ինձ, բայց զաւակներս հաց են խնդրում, ես կ՚փորձեմ։"

Նա ասաց հարուստին. „Դուք ուրիշին բան տալ չէք սիրում, ես այդ գիտեմ. սակայն ես դառնումեմ ձեզ ոչ մեծ յուսով, նման այն խեղդուող մարդու, որ յուսահատութեամբ բռնումէ յարդից. որդիքս սովամահ մեռնումեն, շնորհէք ինձ չորս կապիճ ցորեան։"

Կարեկցութեան կայծը առաջի անգամ կակղեցրեց նրա ժլատ սրտի կոշտութիւնը։ „Ես քեզ ո՛չ թէ չորս կապիճ, ութը կ՚տամ, միայն այն պայմանով...

— Ի՞նչ պայմանով, հարցրեց աղքատը։

„Որ դու առաջի երեք գիշերը իմ մահից յետոյ անցնես շիրիմիս մօտ։"

Այս առաջարկութիւնը հաճոյ չթուեցաւ աղքատին, բայց ի՞նչ անես, այնպիսի թըշուառ վիճակի մէջ նա ամեն բանի կ՚համաձայնէր։ Նա խոստացաւ և տարաւ ցորենը իր մօտ։

Կարծես թէ կալուածատէրը գուշակել էր ապագան, որովհետև երեք օրից յետոյ նա յանկարծ մեռաւ, և ո՛չ ոք չմեղքացաւ նրան։ Երբ նրան թաղեցին, աղքատի մտքին

նկալ խոստումը, որը շատ ուրախ կ՚լինէր զանց առնել, բայց ասաց ինքն իրեն. „Այդ մարդը մեծահոգի էր դէպի ինձ. Նա կերակրեց իր հացով զաւակներս և բացի դըրանից ես խօսք տուի, կ՚նշանակէ պարտական եմ կատարել:“ Երեկոյին գնաց հանգստարան և նստաւ գերեզմանի վրայ: Ամենայն ինչ խաղաղ էր, լուսինը լուսաւորում էր գերեզմանները. և երբեմն երբեմն բուէճը թռթռումէր գերեզմանական ձայներ հանելով: Արևը ելնելուն պէս վերադարձաւ անվտանգ իր տունը. երկրորդ գիշերը անցաւ նոյնպէս առանց վտանգի:

Երրորդ գիշերը նա զգաց մի գաղտնի երկիւղ, ասես թէ մի առանձին բան էր պատահել: Մտնելով հանգստարան, նա նկատեց պարսպի մօտ մի քառասուն տարեկան գունաթափ մարդ սուր ու կրակոտ աչքերով և մի հին վերարկու հագած, որի տակից երևումէին զինուորականի մեծ կօշիկներ: „Ի՞նչ էր այս տեղ փնդռում, գանչեց ռամիկը, միթէ դուք երկիւղ չէ՞ք կրում այս հանգստարանում:“

— Ես ոչինչ չեմ փնդռում, պատասխանեց միւսը. ինչի՞ց պիտի վախենամ, ես մի արձակուրդս առած զինուոր եմ և այս տեղ

եկել եմ գիշերելու համար, վասն զի այլ բնակարան չունիմ։

„Հա՛հ, լա՛ւ, ասաց ռամիկը, որովհետև դուք տակաւին երկիւղ չէք կրում, եկէք իմ հետ այն գերեզմանը հսկելու։"

— Ուրախութեամբ, պատասխանեց գինուորականը, հսկողութիւնը իմ արուեստն է, Մնանք միասին և չարն ու բարին բաժանենք մեր մէջ։

Երկուքն էլ նստան գերեզմանի վրայ։ Մինչև կէս գիշերը ամենայն ինչ խաղաղ էր։ Վերջը լսուեցաւ օդի մէջ սուր շռաչիւն և պահապանների առաջ ներկայացաւ ինքը սատանան։ „Հեռացէ՛ք այս տեղից, անիծածնե՛ր, ասաց նա նոցա. այս մեռելը ինձ է պատկանում, ես կ'առնեմ, նրա և եթէ դուք այս րոպէիս չէք հեռանալ աչքիցս, ձեր վիզը կ'թռցնեմ։"

— Պարո՛ն կարմրափետուր, պատասխանեց զինուորը. դուք իմ զօրապետս չէք և իրաւունք չունիք ինձ հրամաններ տալու, ես ամենևին չեմ վախենում ձեզանից։ Գընացէ՛ք ձեր ճանապարհով, մենք այս տեղ կըմնանք։

Սատանան կարծելով որ փողով կ'կարողանայ յաղթել նոցա, քաղցրութեամբ ասաց

չեն հեռանալ արդեօք, եթէ նա տայ նոցա մի պարկ լի ոսկի, „Շա՛տ բարի, ասաց գլխաւորը, շատ լաւ մտածեցիր, բայց մի պարկ ոսկին բաւական չէ՛ մեզ, մենք չենք թողնել այս տեղը, մինչև կօշիկներիցս մինը չըլցնենք ոսկով:

— Ինչ որ հարկաւոր է, իմ վրաս այժմ չկայ, ասաց սատանան, բայց կ'երթամ բերելու: Ոչ հեռու այս տեղից բնակւում է իմ ընկեր Վաշխառուն, որ ուրախութեամբ կ'հատուցանէ այս գումարը:"

Երբ սատանան գնաց, գլխաւորականը հանեց ձախ կօշիկը, ասելով. „Մենք նրա հետ հին պատերազմական խաղ կ'խաղանք: Սանահա՛յր, տուէ՛ք ինձ ձեր դանակը:" Նա կտրեց կօշիկի ներբանը և սրունքը ուղիղ կանգնեցրեց բարձր կանանչների մէջ: „Փա՛ռք Աստուծոյ, ամեն բան յաջողակ է, և սատանան այժմ կարող է վերադառնալ:"

Նոքա շատ չսպասեցին, սատանան եկաւ փոքր պարկ ոսկի ձեռքը բռնած: „Լցրէ՛ք, ասաց գլխաւորը, փոքր ինչ բարձրացնելով կօշիկը, բայց այդ բաւական չի լինիր:"

Չարահնարը թափեց պարկը, բայց ոսկին ընկաւ հողի վրայ և կօշիկը մնաց դատարկ: „Տխմա՛ր, գանչեց գլխաւորը, ասացի

քեզ որ այդ բաւական չէ՛։ Գնա՛ էլ շատ բե՛ր։« Սատանան գնաց գլուխը թօթափելով և մի ժամից վերադարձաւ աւելի մեծ պարկով։ „Ա՜հա՛ այդ բանի նման է, ասաց զինուորը, բայց չկարծեմ որ լցնէ կօշիկը։«

Ոսկին ընկաւ ձայներ հանելով, բայց կօշիկը մնաց դատարկ։ Սատանան ինքը հաւատալի եղաւ, նայելով իր կրակոտ աչքերով։ „ինչ սարսափելի և լայնատարած բարձեր *) պէտք է ունենաս, բացագանչեց սատանան, երեսը ծռելով։ „Մի՞ թէ ուզումէիր, որ իմ ոտներս էլ քո այծի ոտներին նմանէին,« պատասխանեց զինուորը։ Շատ ժամանակ է արդեօք, որ այդպէս ժլատ ես եղել։ Գնա՛, բե՛ր ուրիշ պարկեր, ապա թէ ո՛չ մնաս բարև։« Նզովածը դարձեալ հեռացաւ։ Այս անգամին նա աւելի ուշացաւ և վերադառնալիս նա ծռվումէր պարկի ծանր բեռնի տակ որ կրումէր իր ուսերի վրայ։ Որքան չաշխատեց լցնել կօշիկը, բայց նա տակաւին մնաց դատարկ, որպէս և առաջները։ Սատանան շատ բարկացաւ և պատրաստուել էր յափշտակել կօշիկը զինուորի ձեռքից, մին էլ տեսնես արեգակի առաջի ճառագայթ-

*) Պաչերը ։

ները լուսացրին երկինքը։ Նոյն րոպէին սատանան աներևոյթ եղաւ մեծ աղաղակ բարձրացնելով։ Խեղճի հոգին փրկուած էր։

Ռամիկը ուզեց փողը, բաժանել, բայց զինուորը ասաց. „Իմ բաժինը տո՛ւր աղքատաց, ես կ’գամ՝ քո մօտ և մնացածովը միասին հանգիստ կ’ապրինք ինչպէս որ Աստուած կ’կամենայ։“

---

8

ՓՈՔՐԻԿ ՀՈՎԻՒ.

Մի փոքրիկ հովիւ երևելի հանդիսացաւ իր իմաստուն պատասխաններով այն ամեն հարցերին, որ նրա առաջարկումէին։ Նրա համբաւը հասաւ մինչև Թագաւորի ականջը, որ, չհաւատալով ամեն կցկտուր պատմութիւնների, հրամայեց բերել իր մօտ տղան և ասաց նրան.

— Եթէ դու լաւ պատասխանես իմ երեք հարցին, որ կ’առաջարկեմ, կ’որդեգրացնեմ՝ քեզ և ինձ հետ պալատումս կ’ապրիս։

„Ի՞նչ հարցեր են, Թա՛գաւոր, հարցրեց տղան:

— Ահա՛ քեզ առաջինը. քանի՞ կաթիլ ջուր կայ ծովի մէջ:

Հովուիկը այսպէս պատասխանեց. „Հրամայի՛ր, Թագաւոր, պատել աշխարհիս մեծ և փոքրիկ գետերը, այնպէս, որ մի կաթ ջուր ծովը չթափի, մինչև որ ես պըրծնեմ իմ հաշիւը, այն ժամանակ ես քեզ կ'ասեմ քանի կաթիլ ջուր կայ ծովի մէջ:“

— Ահա՛ քեզ երկրորդը. քանի՞ աստղ կայ երկնքում: — Հովիւը պատասխանեց. „Թագաւո՛ր, հրաման տուր բերել մի թերթ սպիտակ թուղթ, մի գրիչ և թանաք:“ Ասածը արին: Տղան առաւ գրիչը և սկսաւ այնպէս փոքրիկ պուտեր գրել մէկ մէկու մօտ, որ հազիւ հազ տեսնուումէին, իսկ համարելը խելքի ու մտածելու բան չէր, մարդուս աչքը մութ կըկոխէր: Երբ ամբողջ թերթը ածեց, դարձաւ Թագաւորին և ասաց. „Ահա՛ երկնքումն էլ կան այնքան աստղ, որքան որ այս թերթի վրայ պուտեր կան. համարեցէք ինքներդ, Ձերդ Մեծութիւն:“

Թագաւորը հաւատաց նրա խօսքին, բայց որում ստիպվեցաւ հրաժարուել հաշուելուց:

— Երրորդ հարցիս նպատակն է իմանալ, յաւիտենականութիւնը քանի՞ վայրկեանից բաղկանում է։

„Ձե՛րդ Մեծութիւն, այն տեղ Պոմերանի միւս կողմը կայ մի սար, այդ սարը ունի մի մղոն բարձրութիւն, մի լայնունութիւն և մի խորութիւն։ Հարիւր տարին գալիս է այն տեղ մի թռչուն, ճանկումէ կտուցով սարը և տանում իր հետ աղամանդեայ փշուրներ. երբ որ այս թռչունը այդ կերպով ամբողջ սարը կ'ոչնչացնէ, այն ժամանակ կ'անցանէ յաւիտենականութեան առաջին վայրկեանը։“

Թագաւորը ասաց.— իմ բոլոր հարցերին իմաստունի պէս պատասխանեցիր։ Այս օրից եկ ինձ հետ բնակվի՛ր պալատումս և եղի՛ր ինձ որդի։

ՎԵՐՋ



## ՑԱՆԿ․



---